ՀՏԴ 1/14
ԳՄԴ 87
Գ 842

***Սրբագրիչ*** ՝Նառա Խոստեղյան
(Ինքնա)ճանաչողություն – (ինքնա) հաղթահարում - (ինքն)արարում. սեր՝ առ Բարձրագույն Եսը …
***Հեղ.*** ՝Տիգրան Գորշ (Տիգրան Ստեփանի Գրիգորյան)
(ծնվ.՝ 06 մայիս 1985թ., իմաստասեր, իրավաբան փաստաբան)

*ԳՄԴ 87*
*Գ 842*

*Գորշ Տիգրան (Տիգրան Ստեփանի Գրիգորյան)*
*Գ 842 ԽՈՍՔ՝ ԲԱՐՁՐԱԳՈՒՅՆ ԵՍԻ / Տիգրան Գորշ.- Եր.: Աստղիկ, 2022.- … էջ:*

ISBN 978-9939-50-494-0

## Նախաբանի փոխարեն

*Ներհայեցումներիցս մեկի ժամանակ հանդիպեցի նախամարդուն՝ ճիշտ այն պահին, երբ գտնվում էր կենդանական վիճակից մարդկայինին անցնելու կամրջին, բայց ինձ համակած, երբևէ չպեսնված ամոթը թույլ չտվեց զրուցելու չափ մոտ գնալ նրան, իսկ երբ նա ինձ նայեց մարդու կողմից երբևէ տրված բոլոր հարցերը մարմնավորող հայացքով՝ անմեղություն ճառագող ժպիտով, ես, մտաբերելով մարդկային իմացության բոլոր հետևանքները, ուժերի առավելագույն լարումով միայն կարողացա գոռալ. «Չիմացությունդ քո պաշտպանությու՛նն է, չիմացությունդ քո պաշտպանությու՛նն է, …», ու սթափվեցի սեփական աղաղակումից՝ շուրթերիս զգալով ծորացող, նրան չասված բառեր, որոնք զգուշացմանս շարունակությունն էին. « …՝ ինքդ քեզանից, ինքդ քեզանից …»:*

*Հետո ես նրան հանդիպեցի ևս մեկ (վերջին) անգամ՝ արդեն իր նախաձեռնությամբ, երբ ինքս էի կանգնած մարդուց Բարձրագույն Ես-ին անցնելու կամրջին, որտեղ նա, մահին նախորդող ու մահն ազդարարող վերջին շնչի հանգստությամբ, շշնջաց զգուշացմանս պատասխանը. «Գիտե՜մ, գիտե՜մ, …», ու հեռացավ՝ շուրթերիս թողնելով անմեղություն ճառագող իր ժպիտը. որ ինքնարարումն այլընտրանք չունի …*

*1.*

*Նրբաճաշակ փառասիրություն է անհայտությամբ փառքի ձգտումը, բարձր ավելի, քան այն ընդհանրապես ժխտող բռիությունն է …*

*2.*

*Կրկին հանդիպելու համար՝ պետք է գնաս, որ չմնաս անվերջ հեռացող, ու նորանալու համար՝ պետք է եփվես մեղքում, որ չընդունվես անմեղ՝ հնացող սովորություն …*

*3.*

*Անշուշտ, ամեն ոք Բարձրագույն Բանականության ընտրյալ չէ, բայց բոլորի նկատմամբ դա ժխտելու դատողությունն էլ մտքի կոշտություն է, եթե ոչ առանձնահատուկ ընդգծվելու քողարկված դիրքավորություն: Նման ուսուցչությունը կարող է ապահովել սոցիալական ներդաշնակ կեցություն, որով մարդը, ընդամենը, կարող է կոչվել ցեղի ներսում խռովությունը հաղթահարած անասուն …*

*4.*

*Այնուամենայնիվ, խավարածին և խավարից ծնված խոհերս առավելապես գրավ(ում)ել են լուսավոր մարդկանց, ու նրանցից քչերն են գտնվել փրկչի խղճահարությամբ առաջնորդվող փառասերներ …*

*5.*

*Շրջանը հավերժություն է թվում նրան, ով չի հասցնում կատարել մեկ ամբողջական պտույտ: Նա, ով գիտակցում է մարդու բանտարկված գոյությունը, ձգտում է անիմացության շառավիղը կրճատել մինչև անչափելի միջնակետ ու դառնալ նոր մեկնաբանության միջակետ...*

*6.*

*Եթե չի ապացվել այնպես, որ լինես աղբյուր, ամպ, կամ, գոնե, ցող, ում կխմեին մարդիկ, հրեշտակները, կամ, գոնե, ուրվականները, առավել ևս, եթե ապացվել է այնպես, որ եղանակից կախված ջրափոս ես, ուրեմն, քանի կաս, պետք է ցանկացած պատահած անասունի շուրթերին փրվես, որ չլինելուն պես ճանաչես՝ կյանքը հենց դա էր և դու ապրել ես, մնացած բոլորը մեռյալ պատրանքներ են ...*

*7.*

*Տվեք մարդուն անմահություն և, բոլոր փորձերն ապրելու վերջում, նա, անպայման, կփենչա լինել մեկօրյա կյանք ապրող թիթեռ, որի անհնարինությունն էլ կդառնա նրա դժոխքը ...*

*8.*

*Ժամանակի աղիներով շարժվել առո՞ղջ, թե՝ ոչ, այո, այդտեղ ընտրություն կա, բայց կա նաև երրորդը՝ նրան զրկել քեզ կրկին ուտելու ախորժակից ...*

*9.*

*Սահմանազանց բարեգթությունն էլ անառակություն է, իսկ սահմանը բարոյական ընկալումից դուրս է, որովհետև բարոյականության միակ շահառուն հասարակությունն է ...*

*10.*

*Տուր մարդուն իր կենցաղը հրապարակային դարձնելու հնարավորություն և նա, մեծ հավանականությամբ, կփորձի ունեցած ցանկացած փաղանդ, նա ուղղակի կմահի փառասիրության պոտենցիալը՝ լինել ավելին, քան կա, թեկուզ որպես մեծանուն չարագործ, բայց ոչ միջակություն:*

*Այսօր ամենաշատն է տրված այդ հնարավորությունը ու հենց այդ նպատակով, որ լինի միջակություն ...*

*11.*

*Ակնթարթի մահվանը նախորդող վերջին ինքնախոստովանություն. «Ես ոչինչ չեմ հասկացել, ես միայն փորձել եմ հասկանալ»:*

*12.*

*Բոլոր սպասումներում սպանվում են հավերժություններ, ու թե ինչքան, հաշվարկն քայլ րոպեի՝ մեկում վաթսուն հավերժություն...*

*13.*

*Երբ այլևս անկարող եք պարփվել մահն իրար սիրելով, բաժանվե՛ք, որ, գոնե, խուսափովանեք՝ ինչու եք ապրել միասին:*

*Երբ այլևս անկարող եք բարձրանալ մեղքով, գահավիժելուց փրկվե՛ք (ինքնա)ներումով...*

*14.*

*Առաքինի մարդիկ Արարչի կոկորդին դեմ առած ոսկոր են. նրանք խանգարում են վճռել աշխարհի վերջը ...*

*15.*

*Եթե ճիշտ ես ընկալել հարցը (ինքնաճանաչողության), ապա, թե ինչպես գտնել այն, ինչը գոյություն չունի, պատասխանն է՝ պետք է (ինքնարարմամբ) անհետանալ ...*

*16.*

*Օրինականությունն ու արդարությունը հարաբերվում են, ինչպես բարոյականությունն ու սերը, և նա, ով հնարավոր է համա-*

*րում դրանց ներդաշնակումը, կամ նույնացումը, բարձրակարգ բարոյականի հետ մեկտեղ՝ հավակնում է կոչվել մարդկության դեմ գործող առաջնակարգ փականք, եթե, իբրև անսեր անաստն, չունի անմեղսունակի արդարացում…*

*17.*

*Սերը համարել ընտրելի նույնն է, թե վրադ լցված լավայից չայրվելը պայմանավորել կամքով, ուստի, նրան, ով հնչեցրել է նման միամիտ ախմախություն, կամ կանխամտածված երեսպաշտություն, ճանաչիր՝ իբրև քեզ հանդիպած մեծագույն սուտ:*

*18.*

*«Ներման կարիք չունես, երբ բոլոր դիպավորություններում միամիտ ես, թեկուզ եթե հաճախ, կամ միայն ավերում ես, քանզի արդարացված ես, երբ նպատակիդ էությամբ բարեմիտ ես».- սարսափ երազում Ներոն լսում էր Սատանից:*

*19.*

*Առանձնահատուկ փիսա են նրանք, ովքեր ամեն ինչ պայմանավորում են ընտրությամբ, թեկուզ եթե ինձ են ընտրում. այդպիսիք, ի տարբերություն հանգամանքին անգիտակից տրվողների, ընդամենը հիմնավորում են իրենց ապագա դավաճանությունը,*

*իսկ այնտեղ, որտեղ, հանկարծ, կարող եմ կոչվել ամենաընտրելի, ընտրողները պետք է համարվեն փիեզերականության մասին ճիճուներից էլ քիչ պատկերացում ունեցող մակաբույծներ ...*

*20.*

*(Ինքնա)ճանաչողության (սիրո) մեջ հպարտությունից ազատվեցի՝ նաև որպես ճիճվաթափություն, խղճից՝ որպես դատարկ առողջություն, հիմա սիրտս լցնող ցավով եմ (ինքն)արարվում՝ մինչև մահվան հետ նշանադրությունը հասունանա ամուսնության ու վերջ տրվի սոցիալական գոյությանը, որտեղ ստիպված ենք լինել մակաբույծ, միաժամանակ, դրանց կեցության միջավայր:*

*21.*

*Անշուշտ, դուք կդադարեք հանդիմանել նրան, ով ստիպված է խավար փնտրում, որովհետև լույսը վնասում է նրա առողջությանը, եթե չարդարանաք չիմացությամբ, որ այդպես չի լինում, բայց նորահայտ կարեկցանքն ու հնացած անգիտությունը, ընդամենը, ձեզ խղճուկ է դարձնում ճշմարտության մեջ, որ ավելի շատ ապականել եք այնտեղ, որտեղ ուրախությամբ եք հայտնվել ...*

*22.*

*Բարձրագույն Ես-ի աջակիցները դրախտից և դժոխքից դաստալիք երկու հրեշտակներն են, որոնց հաշտեցրել է մարդկության դեմ նրանց առաջնորդների դավադրության գիտակցումը ...*

*23.*

*Իշխաններն անցողիկ են, ծառա լինելու տգիտությունը՝ հավերժ ...*

*24.*

*Երկաթե կողպեքով փայտյա դուռը դիպուկ է նկարագրում, թե ինքնամեկուսացողն ինչ է սպասում ...*

*25.*

*Մենակությունը տաղտկալի է նրան, ով երբեք չի տարվել փակ կոպերի գունային խաղով ...*

*26.*

*Նեռի հարատևությունը վկայությունն է Աստծո անկարողության՝ ներելու ամեն ինչ և ամենքին, կամ, այնուամենայնիվ, կա մի բան, ինչում Նեռը պետք է Աստծուն ների ...*

*27.*

*Մեզ սովորեցրել են նրան պատկերացնել այլանդակ և լկտի, ինչը, անշուշտ, նրա*

*իմացությունն է մեր մասին, բայց այն, թե ինչ է ինձ հետ կատարվում պահերին, երբ համակրում եմ Ներին, ստիպում է հույզի հրաբուխներ փնտրել համեստ մարդկանց մեջ …*

*28.*

*Հաշմություն ունեցողը, ով հրաժարվում և/կամ ամաչում է ընդունել իր արտոնությունները՝ իբրև բոլորից չտարբերվելու ձգտում, կարճ ժամանակ անց փրկվում է խղճի շուկայից՝ հայտնվելով հպարտության չոր տափաստանում. սա այն մասին, թե կեցության ինչ ընտրություն ունեն անկատարությունից կատարելություն ուղին հակառակ քևեռի ուղղությամբ տևնող մեծամասնության հոգիները …*

*29.*

*Ծնողներիցդ յուրաքանչյուրն օտար է քեզ մյուս ծնողիդ արյան բաղադրությամբ և չափով, որը կրում ես դու, երեխայիդ էլ օտար ես դու՝ մյուս ծնողի արյամբ, որը կրում է նա: Արյամբ միակ հարազատը, ում, սակայն, առաջինն ես մի օր դադարում համարել ընտանիք, նույն ծնողներիցդ սերված քույրդ է և/կամ եղբայրդ:*

*Ուստի, եթե արժեքների հեղափոխություն, ապա՝ որ ինքնարարումը կարգվի և չդադարի լինել խորթությունից զերծ ԱՄԵՆԱ-ՄԵԿ…ություն:*

*30.*

***(Աստվածա)մայր.***

*Մենք գիտենք տարբերակել և ամեն ծնած, որդեգրած, կամ ուրիշի արգանդը վարձույթով օգտագործած էգի չկոչել մայր, բայց չգիտենք նրան, ով կարող է մայրանալ առանց ծնելու, որդեգրելու, վարձելու՝ էությամբ լինելով (ոչ աստվածածին) Աստվածամայր: Իբրև սովորական դարձած իրողություն՝ գիտենք նաև, որ մայրը, երբեմն, կարող է արդեն հասունացած զավակին առաջին անգամ հանդիպել, բայց չգիտենք իրողությունը, որտեղ չի հանդիպում՝ իր (աստվածա) մայր լինելն է իմանում…*

*Չգիտենք, որովհետև խաչի մեկ պատմությունն իր ընծայումից դուրս ընդունելով (նաև մերժելով) մեր խաչերը բարձրացնելու փոխարեն՝ դրանք անճանաչ թաղել ենք…*

*31.*

*Աստվածասերը նրանում տեսնում է աստվածամերժ, աստվածամերժը՝ աստվածասեր, ես՝ Աստծուց և Նեռից փոխադարձ հարգանքի ապտակներ ստացող Բարձրագույն ԵՍ…*

*32.*

*Եթե ապագան անորոշ է տարբերակների անսահմանությամբ, թե ինչ շարունակություն կարող է ունենալ ներկան, ապա*

*անցյալն անորոշ է եղած փարբերակների անսահմանությամբ, որոնցից, կոնկրետ պահին, միայն մեկում է կարողանում լինել գիտակցությունը, ինչը, սակայն, չի բացառում նրա անցումն այլ փարաչափություն՝ առանց որևէ պատճառահետևանքային կապի, կամ դրա գիտակցման, ինչպես երազում, որն ապրում ենք ամբողջ նախապատմության իմացությամբ: Ըստ այդմ, այն ամենը, ինչը պայմանավորվում, կամ պատճառաբանվում է անցյալով, կասկածելի է, հետևաբար՝ լոկ հավատ և ոչ փաստ: Փաստը զգացողությունն է, որ կարող ես օտարություն զգալ հարազատի նկատմամբ, ով, գուցե, թշնամիդ է այլ տարածականության մեջ, որտեղ ներկա եք ոչնչացնում, և հարազատություն՝ օտարի նկատմամբ, ով, գուցե, սիրելիդ է այլ տարածականության մեջ, որտեղ ապագա եք կերտում: Այլից զատ, ինչ-որ մի տեղ երջանիկ ես, կամ՝ էլի, ինչ-որ մի տեղ էլ դժբախտ, կամ՝ ավելի, ինչ-որ մի տեղ ծնվում ես սա կարդալուց, ինչ-որ մի տեղ՝ քեզ թաղում են …*

*Եթե փարբերակների անսահմանություն, ապա յուրաքանչյուր փարաչափության յուրաքանչյուր ակնթարթին հաջորդում, կամ դրանից ածանցվում են անսահման այլ ակնթարթներ ու զարգացման այս ընթացքն անվերջանալի է և հենց դրանով ամբողջացնող ամենը, որտեղ ամեն ինչ մաս է ու ամբողջ,*

*իսկ ժամանակը՝ վերադարձող սկզբնավերջ ակնթարթին՝ ծագումին, արարումին, ինք- նածնին ...*

*Եթե անցյալը որոշակի է մեկ փարբերա- կով, ապա ապագան հայփնի է մեկ լինելիով, ըստ այդմ, մարդը չի կարող չանել այն, ինչ գիփի. նա հենց միայն իմացածն էլ անում է՝ հանկարծահայփ, ասված, ինքնաճանաչ ...*

*...և, ուրեմն, ավելի զվարթ՝ դեպի ԱՊՈԿԱԼԻՊՍԻՍ:*

*33.*

*Երբ մփածում եմ երկար, քան միանգա- միցն է, պափասխանում եմ՝ ՈՉ. կորցնում եմ հաճախ, բայց երբեք ձեռք չեմ բերում այն, ինչ իմը չէ ...*

*34.*

*Բարձրացնող փառապանքի և յուրա- քանչյուր բարձունքի նվաճման բերկրանքի հափմամբ վեր խոյացող խաչով համբարձ- վում է Բարձրագույն ԵՍ-ը ..., մահը նրա խա- չը վերածում է գումարման նշանի՝ իր միջև և Մեծն Առեղծվածի ...*

*Սա, նաև, թե ինչպես լինել Տիեզերքին գումարելի և ինչքան մեծ, ու չլինել ոչինչ չփո- խող զրո, կամ հանելի ...*

*35.*

*Կենսունակ մնալու/լինելու համար՝ բա- րությունը ոչ միայն պեփք է չարաշահվի, այլ՝*

*անհրաժեշտաբար տրվի ուրիշների շահագործմանը: Դրանից նեղուրտելը ո՛չ այնքան անշահավետության բողոք է, կամ ցավալու հոգնություն, ինչքան հոգու գոյության խորքային իմացության պակաս. բոլոր դեպքերում՝ դա առվի թունավորում է ակունքից …*

*36.*

*Կատարյալը բացառում է ռոմանտիզը, տեղին է ասել՝ այն մահն է ռոմանտիզմի, ինչը կա իբրև գեղեցիկ բան և այնքան, ինչքան պետք է գեղեցկության պակասը, կամ այն կիսատող այլանդակը հաղթահարելու համար:*

*Կատարյալը ճշմարտությունն է …*
*Սերը՝ կատարելության ձգտում …*

*37.*

*Այլից զատ, արվեստի ցանկացած գործ ապրած կրքի մահացած արդյունք է, առավել ևս, երբ պատվիրված է: Դա նույնն է, թե սեր անելուց հետո ժայթքած սերմնահեղուկը ֆիքսել՝ ձևի մեջ բովանդակությունն արտահայտելու և/կամ այն ընդարձակելու և/կամ նոր բովանդակություն հաղորդելու միտումով, ինչն, անշուշտ, կարող է ճանաչողության միջոց, կամ ազդակ հանդիսանալ, համարվել արժեք, ճաշակ, գեղեցկություն, որպիսին կարող է հանդիսանալ ցանկացած*

*այլ մեռած բան, որը հավասարապես արժանի է ներկայացվել գերեզմանոցներում, որոնք կոչվում են պարկերասրահ, թանգարան և այլն: Բայց նա, ով ուրիշի մահը դարձնում է հանգստյան սենյակի բաղադրիչ, ներկայանալու միջոց, ոգեշնչման անսպառ աղբյուր ..., չի կարող համարվել ճանաչողության մեջ կենդանի բանականություն:*

*Երբ արվեստագետին հարցնում եմ՝ արդյոք համարու՞մ է հիմար նրանց, ովքեր գնում են իր գործերը, ուզում եմ լսել՝ ԱՅՈ ...*

*38.*

*Կամքի և բախտի բարոյականության առարկաները զարմացած հետևում էին ընկածի հրճվանքին, մեկի՝ «Ինչու՞ չի շտապում բարձրանալ», մյուսի՝ «Ինչու՞ ձեռքս չի խնդրում» «փրկչի» ագրեսիվությամբ նետվող հարցերն անհետևանք բախվում էին նրա՝ կյանքն արհամարհող հանգստությանը. նրանք չգիտեին, որ ընկնելու մեջ վայելքի արժանի հաճույք կա, երբ բարձրացել ես ընդունելով ...*

*39.*

*Քանի դեռ չես հաղթել, այն գոյություն չունի, հաղթելն էլ բացառում է նրա գոյությունը. չկան սահմաններ՝ դուրս գիտակցությունից, գիտակցությունն ինքը սահմանն է, որով նվա-*

*ճում և պաշտպանվում ենք. նվաճելով՝ սեղմվում թիկունքից, պաշտպանվելով՝ առջևից, ու միայն հողի սառնությունը մեջքով զգալուց է փոխվում շարժման ուղղությունը՝ առ Անսահմանություն ...*

*40.*

*Ինչպես հայացքի համար հոնքեր,*
*Մտքին պետք է հոգի,*
*Որ առեղծվածը չանտեսի,*
*Ինչպես մահացած դիտորդի ...*

*41.*

*Հետևիր միայն քե՛զ, այն մեկին, ով գնում է բոլորից հակառակ ...*

*42.*

*Թեկուզ անկեղծ սիրով, բայց գլուխը շոյելն էլ անարգանք է նրան, ում ուսերին կանգնելով ես բարձր. երախտագիտությու՞ն, նայիր վերև՝ ձեռքերով եղիր նրան երկայնորդ ...*

*43.*

*Ճշմարտությունն անկախ է մտքից, այն բացարձակ է գոյությամբ, կատարյալ՝ էությամբ, նրա հարաբերականությունը բացառապես մե՛ր ինքնասահմանումն է, հետևա-*

*բար՝ ճշմարտության բացարձակի ձգտումը ոչ մտքի ընդլայնում է, առավել ևս՝ ոչ էլ նրա խտացում մտքում, դա ինքնաժխտումն է այնտեղ, որտեղ ինքդ քեզ սահմանում ես ինչ-որ ինչ/ով ...*

*44.*

*«Եթե երբևէ ստացվի այնպես, որ ինչ-որ ժամանակ, ինչ-որ տեղ պետք է ներկայանանք Երկրացի, հպարտանալու՞ ենք, թե՞ ամաչելու». հարցը դադարել է մտահոգել, քանզի հպարտության դեպքում էլ անպայման ներկա է լինելու ամոթը, ինչը բախտը չէ, որ տվել է մեզ ...*

*45.*

***Հարցին՝ ինչու՞.***

*Որ վերջնապես իմանամ ինչու, կդադարեմ խորհել, ու սրան հակառակ՝ չիմացությամբ հաստատված հիմարի երջանիկ կյանքի ծայրահեղությունից հասկանում եմ, որ ապրում էլ ենք, քանի դեռ չգիտենք՝ ինչու ենք ապրում, ու մեռնում ենք, որ իմանանք՝ ինչու ենք ապրել ...*

*46.*

*Մերժելով ուրիշի հետ ցանկացած նմանություն, որ տեսնում ես թեկուզ մեկի մեջ,*

*հավանաբար միայն բացարձակ փականքի է հնարավոր վերածվել, բայց, հաճախ, ոչինչ այլ, քան այդ անդորրը, չեմ ուզում …*

*47.*

*Ինքնաճանաչողությունը հիասթափություններն արահետ է. բարձրանալով՝ մաղվում են հեփապնդող սփերը, ամեն քայլում քեզ հասնում են առավել ուժեղները, համոզիչները, հավափալիները, որոնցից յուրաքանչյուրն իր հետ ցած է գլորում կանգ առնելու, երբեմն էլ, վերադառնալու՝ բութ հավափով ծանրակշիռ դարձած իմաստ, ու ամբողջ ընթացքում, ուր ճանաչողությունդ պարբերաբար խամրում է զգացմունքներից, փարոս է դառնում վերջին հիասթափության ցոլքը. այն մեկի, ամենա-ի, որը ցած է գլորելու ամբողջ Եսդ՝ որին պարփվելու ես՝ իբրև ինքնախաբեություն և հաղթես՝ իբրև ինքնարար ճշմարտություն …*

*48.*

*… այնուամենայնիվ, փխուր է …*

*49.*

*Ֆիզիկական ներկայությունից առավել՝ սերը հասկանալուն ոչինչ չի խանգարում. կենսաբանական անմահությունը (ինքնա)ճանաչողության մեջ կփոխեր միայն այն, որ մահը*

*ապաստումից կվերածվեր հակվածության ..., պահանջի, տենչի:*

*50.*

*Միտքը սահմանափակված է բառերով՝ լռության մեջ ծնված հարցերը պատասխաններ չեն գտնում, այդչափ ոռնալու շնչառություն էլ չունենք, ու միայն վերջին շունչն է արտահայտում առաջինով կլանածի ամբողջ իմաստը. (ինքնա)ճանաչողության հերթական հարցը վերածվում է հետապնդող ուրվականի՝ զբաղեցնելով տեղը գիտակցության գերեզմանահողում. որտե՞ղ եմ խաբվ(ել)ում ...*

*Միայն ինքնաստուգման խորության մեջ, որտեղ գերեզմանափորից վերածվում ես գերեզմանախույզի, իրականությունը երևակվում է իր ամբողջ այլանդակությամբ. բացարձակ ճշմարտության առաջին շնչումից հետո, որի բախտը, գուցե, ունեցել է միայն առաջին մեկը, արտաշնչում ենք այն հարաբերականացնող սուտը, հետո, այլևս, շնչում շարունակաբար կիսատվող կիսաճշմարտություններ՝ ավելի ու էլ՝ առաջին արտաշնչումից մինչև վերջին շունչ տարածաժամանակային ողջ միջակայքում, միաժամանակ սպանելով նրանց, ովքեր ծնվում են ծառ:*

*51.*

*Բոլոր մեղքերը չեն, որ գրավում են սերը, քանզի, մեծամասամբ, դրանք մեղք չեն, տգի-*

*փություն են, բայց այնտեղ, որտեղ հայտնվել է սերը, անպայման կա մեղք՝ ներման արժանի, հետևաբար բարձրացնող:*

*Նրանցում, ովքեր սիրում են քեզ, պետք է ճանաչես մտադրությունների ու/բայց խղճահարությամբ չփչացնես սրբադասվելու նրանց հնարավորությունը, հպարտությամբ՝ քեզ համար արվող միջնորդությունը, և քանի որ իրական զոհաբերությունն ուրիշի ինքնազոհությունն ընդունելն է, անհնար է մտադրությունն ընտրելը. կարելիությունը միայն մտադրությունն ընդունելի դարձնելն է, որի համար ինքդ էլ պետք է անընտրելի սիրելուն տրվես ...*

*52.*

*Ո՛չ միայն արդար, նաև սու՛րբ է վրեժը՝ օրորոցային դարձած ...*

*53.*

***(ինքնա)ճանաչողություն.***

*Համնել ներկայությանդ, որը կլինի ցանկալի՝ առանց վկաների և/կամ դրանց հորինելու պահանջի:*

*(ինքն)արարում.*

*Ոչնչացնել նրան, ում ցանկությամբ հասել ես ներկայությանդ՝ (ինքնա)ճանաչողությամբ ցանկալի:*

*54.*

*Այն, ինչ մնում է մահից հետո, ոչ մի եզր չունի նրա հետ և չի կարող համարվել նրա նկարագրություն, կամ հապկանիշ. հետոն կյանքի այլ շարունակություն է, որտեղ, գոնե, թերմացքի բարոյականություն չկա, հետևաբար՝ այն, ինչն ապահովում է դա, այնուամենայնիվ, բարձր ճաշակ է, կամ դրա հապկանիշ …*

*55.*

*Մնալու հնարավորություն փնտրողներից առավել՝ մերժում եմ իմաստնությունները, որոնք փնտրում, կամ փորձում են հնարել վերադարձի արահետ, քանզի վերադարձողների առաջին շարքերում էլ, ինչպես ամենուր, կանգնած են պակաները: Ինքս ինձ էլ մերժում եմ այնտեղ, որտեղ, հանկարծ, իմ կարոտով կարող եմ դառնալ նույնի կրկնությամբ եզակին այլանդակողների համար նախաշեմք …*

*56.*

*Նպատակներն անվերջ ավելացնել հնարավոր չէ, ու գագաթնակետից մեկնարկող անկումն անխուսափելի է, որտեղ չկա սահուն իջնելու հնարավորություն՝ անիմաստության խորքում հանկարծակի ես հայտնվում. ծայրին հասնելուն պես՝ բուրգը շրջվում է ուղիղ գլխիվայր, որից դուրս գալուն պետք է ավելի շատ պահանջների բավարարում՝ մինչև հույզերի զրոյական փիրույթ հասնելու, ապա՝ նոր բուրգ*

*կառուցելու համար, ու քանի որ յուրաքանչյուր հերթականը ստացվում է նախորդից փոքր, իսկ պահանջների բավարարումը՝ մեծ, վերջացնում ես անիմաստության մեջ ուժասպառ խեղդվելով, կամ՝ զրոյին հորիզոնականորեն հիասթափվելով, եթե ինքնախաբեության բութ հավատը չի համոզում, որ վերջին ամենափոքրը մեծ է առաջին ամենամեծից:*

*Բայց այսմ, եթե նպատակ, ապա՝ հիասթափության առանցքով սրտի և մտքի զրոյական տիրույթին հավասարակշռմամբ, այլ ավելին՝ աննպատակ. գիծը փոխարինելով զրոյի միջնակետով՝ դրան տանող անհաշվելի շառավիղներով …*

*57.*

*Ինչպես արյունը՝ մարմնի, սիրո համար կարոտն է, որը հեռացումից թանձրանում է, մերձեցումից՝ նոսրանում, ու անհայտ (անգոյ) է առողջության միջնակետը: Ոմանք մահաբեր հիվանդության զարգացումը դանդաղեցնում են պարբերական դավաճանություններով, ոմանք՝ մահին են դավաճանում հիվանդ գոյակցությամբ, կամ սերը՝ առողջությամբ, ու միայն նրանք, ովքեր գիտակցում են սիրո և մահվան հաշտեցումը, հիվանդությունը հաղթահարում են մահափորձերով: Սերը, որն այս դեպքում մահացումից վերաճում է մահին ընդունման, այլ բան չէ, քան (ինքնա)սպանության փորձ, որը, երբ չի ավարտվում առաջին հաջող մեկով,*

*առավել ևս՝ հաջորդ(ներ)ի բացառումով, այլից զատ և ըստ նախորդած ճաշակի, հոգին այլանդակում է ափիներով, բայց, այնուամենայնիվ, այդպես քարտեզագրվում է առեղծվածային մի ուղի, որն այլևս չի կարող չշարունակել նա, ով մասնակցել է դրա մեկնարկին …*

*58.*

*Ինձ մաղթել բոլոր երազանքների իրականացում նույնն է, թե ցանկանալ ինքնաոչնչացում, քանզի, հաճախ, համակվում եմ երազանքով, որից փրկվելու արտոնություն ոչ ոք չունի: Բայց և այնպես, այն, ինչ բացարձակորեն բոլորին է վերաբերելի, անկախ բնույթից՝ աստվածային թույլատրելիություն ունի …*

*59.*

***Գամահան և գերեզմանատոր աստվածների ծնունդը.***

*Հնարավոր չէ բարձրանալ հոգևորում՝ շարունակաբար զբաղված լինելով կենցաղի տնտեսական և տեխնիկական նորարարություններով, ու եթե դա տեղին է կոչել կատարելագործում, ապա, միայն, հոգու դագաղի, որը, գուցե, մի օր կհասնի զարգացման ինքնաշարժության աստիճանի, բայց դրանից չի փոխվի պարունակությունը: Միայն այնտեղ, որտեղ բնատուր, կամ հարկադրանքից սեփական կամքի վերածված ինքնազսպման իմաստնութ-*

*յամբ կանգ են առել կենցաղավարության մեջ, կարելի է հանդիպել իրական երջանկություն (գոյության իմաստավորում), ինչն արդեն շատերին անհասկանալի է ճիշտ այնպես, ինչպես նրանց՝ երջանկություն բառը, որի ծագումն ու կիրառությունն առկա է այնտեղ, որտեղ կա գոյության իմաստազրկում: Ըստ այն կիրառող լեզուների բազմության՝ եթե ոչ արդեն, ապա մոտ է եզրագիծը, որից այնկողմ կորսվելու է կանգի կետը, որտեղից կարելի է ճախրել հոգով և չտողալ ինքնաշարժ դագաղով, ու ստրկածների շարքը չհամալրել ևս երկուսով ...*

*60.*

*«Կամքն՝ առ ազատությունը», որպես բարու բարձրագույն աստիճանի ձգտում և տիեզերական շնորհ, մարդու համար դարձել է մշտնջենական պատուհաս և մեծագույն չարիք, երբ բնությանը գրկվելու փոխարեն՝ ընկալել է իբրև բնությունից անկախանալու հնարավորություն:*

*61.*

*Ինքնախաբեությու՞ն, ի ծնե մեղավորությու՞ն, մեղքի գայթակղությու՞ն ..., դրանք այլևս ձանձրալի արդարացումներ են, որովհետև մենք վաղուց չունենք փրկվելու հնարավորություն, ու այլընտրանքը մնում է վերաիմաստավորումը՝ փրկվելու համար չենք ծնվել, իսկ հետո՝ չե՛նք էլ ծնվել, որ փրկվենք ...*

*62.*

*Երեխան պետք է նաև այնպիսի չարություններ անի, որ բացատրելու համար՝ ծնողն էլ կապարելագործվի, կամ, առնվազն, ծնողից պատիժը ճանաչելու հետ, նաև ծնողի չիմացությունը բացահայտի, իսկ փիեզերքի դեպքում բացառվում է, որ ինքնարարությունը մերժվի ...*

*63.*

*«Ո՞վ եմ ես» հարցի ունակությամբ՝ մարդն իրեն բարձր է կարգել բնության մեջ առկա ամեն այլից, ու քանի որ այն չի փրկել ուրիշ մեկից, նրա իշխանությունը համարվում է ինքնախաբեություն և չունի անգամ խաբվածի արդարացում: «Կամք՝ առ իշխանություն»-ը գոյության իմաստավորում էր մինչև դրան հասնելը, իսկ այժմ, երբ իմաստազրկված գոյությունը ժառանգաբար է փրկվում, չկա այլ մխիթարանք, քան փեսակի մեջ նույն կամքով պատասխանի հետաձգումը, ինչն անխուսափելիորեն և անպայման անհապաղ, ի հայտ է գալիս ամենքին՝ դատավարության մեջ, որտեղ ամեն այլը դատավոր է ու անգամ Նեռը պաշտպան չէ:*

*Ո՛չ ներում, ո՛չ էլ պատիժն ընդունելու իմաստնություն, այլև միայն ինքնազոհություն՝ թեկուզ էլի անպատասխան, բայց միակ իրական բարձրացում՝ ինքնիշխանություն ...*

*64.*

*Եթե ամեն ոք յուրահատուկ հոգի է և մատնահետքի նման անկրկնելի մեկը, ուրեմն կեղծ են ինքնաճանաչողության բոլոր այն իմաստնությունները, որոնց հետևորդ է թեկուզ երկրորդը, կամ մոլորված է, առնվազն, նրանցից մեկը, քանզի ճշմարտությանը, որն անկախ է մտքից, բացարձակ է գոյությամբ և կատարյալ՝ էությամբ, յուրաքանչյուր ոք առնչվում է սեփական ուղով՝ անկախ գիտակցումից և/կամ ընդունելուց. ճիշտ մահվան պես, որի աչքից ոչ ոք չի վրիպում, ու, թերևս, տարբերությունը նրանում է, թե ով իբրև ինչ է ճառագայթում, ինչպիսի հզորությամբ և ինչ անկյան տակ է կլանվում, հետևաբար՝ ինչ է պատկերում և ինչ շարունակություն է ունենում (գուցե): Եթե առանց գուցե, ապա անկախ ձև ու բովանդակությունից, (ինքն) արարումն մահվան նկատմամբ ունի մեկ նկատառում՝ ինքնաոչնչացվել մինչև մեկ ճառագայթ և մահվան աչքի տրամագիծը միջնակետով հատել ուղղահայաց, ինչպես բոլոր այլ ճշմարտությունները ...*

*Կամ, այնուամենայնիվ, մնում է մեծագույն ամոթ՝ իբրև մասնիկ զանգվածի, որտեղ բոլորս մարմնական նմանությամբ նույնն ենք հոգով ու տարբեր ենք միայն դրա ֆունկցիոնալ հարաբերականությամբ, իսկ ամոթը ստիպում է այլանդակվել մինչև աննմանություն:*

## *65.*

*«Ուզում ես երեխա, որովհետև ներմ՞լ ես ծնողներիդ, թե՞ որովհետև ուզում ես դառնալ նրանց մեղսակից և մեղքը հասցնել ներման, իսկ երրորդ «թե»-ում կա միայն մեղքը թաղելու հնարավորություն, կամ երջանկությանը բավարարող փգիփություն և այն փարածելու անասնություն». - հուշում նրանից, ով փեսնելու պարզև/պափիժ սփացավ՝ ծնվելով չնախափեսված (անկախացած):*

## *66.*

*Բացակայությունդ երբեք չի լցվելու և չի ամրանալու սպասումով՝ որպես հարթակ, որին կարող ես (ինքնա)ճանաչողությունից վերադառնալով վայրէջք կափարել: Չի լինելու նաև դափարկությունը, որփեղ կարող ես ընկղմվել՝ իբրև ամբողջություն. ամենուր հայփնաբերելու ես միայն իմացության ճահիճներ ու եթե լիցքավորումդ չհերիքի (ինքն)արարմամբ հաղթահարել երկրային ձգողականությունը, շարունակաբար պփփվելու ես ճշմարփություններով բեռնված էությամբ, մինչև ջախջախվելդ և մասնափվելդ մանր բեկորների, որոնք առանձին-առանձին չեն լինելու ավելին, քան աղբի մեջ աչքի ընկնող, բայց, միաժամանակ, կիրառության անհայփությամբ անպեփք մանրակներ:*

*67.*

*Ապագայի հանդեպ լինել լավատես, կամ լավի հայտնությունը չպայմանավորել մեծագույն աղետով՝ անհնար է, երբ արդեն մանկահասակների հայացքում չկա անշահախնդրություն, հրաշքի միջից արտահայտվող զվարթություն, միամտությու՞ն ... . խանձարուրը քանդում ես ու ... արդեն փչաց(վ)ած էություն:*

*68.*

*Զուր է ցանկացած վերադարձ, երբ անհնար է հասնել մայրական արգանդի բացարձակ հարմարավետությանը և չլքել այն, իսկ ապագայի պատկերացումը հնացող ներկի նման անպայման լքում է էությունը, ու միայն զգացումը, որ այսօր հանդիպում ես այն, ինչ լքել ես երեկ, հուշում է հնարավորություն, որ այսօր կարող ես ընդունել այն, ինչը վաղը հանդիպել չես ուզում ..., նաև՝ ինքդ քեզ, եթե մշտնջենական վերածնունդների փոխարեն՝ նախընտրում ես մեկ հավերժական ինքնարարում ...*

*69.*

*Կա միայն մեկ դժբախտություն և պատապանք, այն է, երբ ուղիղ հասկանալու հետ միաժամանակ՝ հասկանում ես, որ վիճակված չէ՛ դրանով գնալ. մնացյալն ընթացիկ խնդիրներ և հույզեր են ...*

*70.*

*Իմանալու ձգտման մեջ ավելի ազատ ենք, քան իմացության, որն ավելի խիստ բանտարկություն է, քան անիմացությունը, երբ ընդունում ենք իբրև վերջին հանգրվան ...*

*71.*

***Բարձրագույն Ես-ը՝ անլեզու էություն.***

*Անլեզու գոյակից, անկախ ով, թե ինչ հարցով սահմանվող, խուսափական պատասխան ակնկալելը կարող է լինել անտեղյակության արդյունք, բայց դրա անկարողությունը պայմանավորել միայն նրա չիմացությամբ՝ միանգամայն բթամտություն է. սա այն մասին, որ (ինքնա)ճանաչողությունն էլ երբևէ սկսում ու չի դադարում բացահայտել լեզվից դուրս պատասխաններ, որոնցից (ինքն)արարվում է անլեզու էություն ...*

*72.*

*Երբեք չի լինելու այնպես, որ բոլորն ապրեն ինքնաճանաչողությամբ, հետևաբար, երբեք չի լինելու այնպես, որ աշխարհը լինի առանց չարիք, իսկ բարու հետ դրա երկարատև համակեցությունը վաղուց է առաջադրում երրորդ Մեկի արարման պահանջ:*

*73.*

*Ապրվածային հաճույքից թմրեցած՝ ծնող դառնալուց գրեթե ոչ ոք չի խորհում, թե որ մեղ-*

*քերի հարուցման համար է ծնվել երեխան և վճարելու է ինչքան: Անշուշտ, միրորումը չի նվազեցնում գինը, առավել ևս, չի ազատում դրանից, բայց անպայման նպաստում է մեղքերը հաջորդող ժառանգության զանգվածից դուրս բերելու դասրիարակությանը, ինչն անպայման սպառնում է մարդկանց գոյությանը, բայց այնտեղ, որտեղ պիտի սկսեն արարվել ավելին, քան կային՝ իբրև գեներիկորեն փչացած էակներ:*

*Այնուամենայնիվ, աշխարհում, որտեղ ամույր իրեն համարում է պատժված (բացառելով այլևս անփոխանցելի մեղքերը մարելով սրբագործվելու առաքելությունը ու վերածվում է մարդկության ճահճացմանը նպաստող աղբի) իսկ բեղմնավորը միայն մեղքերն է մուտացիայի ենթարկում, կա ոչնչացումից սարսափող մակաբույծների համար համոզիչ մխիթարանք՝ մարդը դեռ լինելու է այնքան, ինչքան անհրաժեշտ է կեղտոտածը մաքրելուն ...*

*74.*

*Սկավառակն արդեն ներառում է բոլոր հույզերը, հավաքածուի ո՛չ հաջորդական, ո՛չ էլ ընտրողական ապրումը չի փարատում ձանձրույթը, տեղ-տեղ առաջացող խափանումներն էլ սրում են այն կոտրելու ցանկությունը:*

*Այլևս այն, ինչից շուրթերս կպնում են, աչքերս՝ սառչում, մնացած հույզերի ներքո միայն մեռնում եմ ...*

*75.*

*Ներկայում անցյալի հոգևոր, հուզական, մտային ամբողջականությամբ կոնկրետ պահերի վերապրումը մեկ ուղղությամբ հիշողություն չէ, այլ՝ անցյալն ու ապագան միակցող երկկողմանի ուղու գիտակցում: (Ինքնա)ճանաչողությամբ այդ հանկարծահայտնությունը վերածվում է կամքով հայտնության, ապա շարժման՝ (ինքն)արարման ...*

*76.*

*Գիտակցությունից դուրս տիեզերական ճանապարհորդությունից վերարտադրելի հիշողության մեջ մնացել է միայն «պետք է հիշեմ» տենչագին կանչը՝ տարիներ անց բացահայտելով իմաստը, որ ԱՄԵՆԻՑ մեկուսացված ենք հիշողությամբ՝ ինչպես կղզի և ունակ չենք ընդլայնվելով միաձուլվել, իսկ կամրջվելու համար հավատը բավարար միջոց չէ. պետք է տեսնել ...*

*77.*

*Հնարավոր չէ ես-ից դուրս գալով՝ չառնչվել մարդկային ողբերգությանը և որ նրանում չխեղդվի երջանկությունը, ու/բայց անհնար է առանց դրա արարել Ես-ի բարձրագույնը, որի բովանդակության համեմատ չափազանց նեղ ու անիմաստ է մարդու (ընդհուպ հավաքական) գոյությունը ...*

*78.*

*Այն, որ պղամարդը կաղում է սիրո մեջ, կնոջ շահն է, ով ոչ միայն վայելում է հրեշտակների առանձնահատուկ համակրանքը, նաև հրեշտականում է՝ կաղին սիրելու համար …*

*79.*

*Այնուամենայնիվ, պատահականության փարր կա ամենայնի ապացված կատարելության մեջ, որը դուրս է արարչի մտադրությունից, ու դա այլ բան չէ, քան արարվողի միջամտությունը նրա կամքին, հետևաբար այն, ինչն արտաքին դիտմամբ արարում է, ներքին դիտմամբ (միաժամանակ) ինքնարարում է …*

*80.*

*Ո՛չ փարիքը, ո՛չ էլ փորձը, ծնողի մահն է վերջը մանկացման. հաջորդող ուրախություններում էլ, այդուհետ, կա ալևոր փիրություն …*

*81.*

*Մարդը ոչ թե սպերի, այլ՝ չիրացված ճշմարտությունների խցանման խնդիր ունի, իսկ նոր էջից նույնը կրկնելու սովորությունն, ի վերջո, պետք է ավարտվի. նա պետք է խեղդվի, որ սկսի ապրել՝ իբրև ինքնահաղթարված բարձրագույն, կամ դադարի լինել՝ իբրև անհաղթահարելի չնչինություն …*

*82.*

*Աղեփները կարող էին համարվել մարդկային լավագույնի բացահայտման և դրանով համակվելու փիեզերական հնարավորություն, եթե մարդիկ չճահճանային «կրոնի» վերածվող փգիփությունից, որն առաջնահերթ է դուրս գալիս մակերես, իսկ միաժամանակ աղեփից զարգացող գիփությունն էլ անկարող է ճեղքել այն՝ առանց վնասելու հոգուն անհրաժեշփ այդչափ նուրբ արահեփը:*

*83.*

*Խավարիս թանձրությամբ զփված՝ հոգիս կլանում է լույսի միայն մաքրամաքուր շողերը ..., մնացյալն, ընդամենը, գոյացնում են շողքս:*

*84.*

*Դուք չգիփեք, թե ինչքան ափիպված է անդունդը կլանում ձեզ ու ձեր մեջ ինչքան հազվադեպ է պափահում նրա քիմքին հաճելի մեկը, ով չհաջողելով բարձրանալ՝ ընկնելն էլ ընդունել է իբրև թռիչքի ուղղություն ...*

*85.*

*Եթե ուրախությունն ու հաջողությունը պայմանավորում են կամքով, ապա ինչու՞ նույն կերպ չի խրախուսվում սեփական փխրության և դժբախփության հեղինակումը, երբ կիսափություն արարվելու փոխարեն՝ կարելի է քանդվել մինչև ամբողջություն, որփեղ հակա-*

*ռակն է հանկարծահայտ՝ անխուսափելի՝ նաև իբրև ընդունելու փորձություն …*

## *86.*

*- Խորտակվող նավը լքող առնետ,*

*- Այո, լինել կարող եմ, երբ աղետն ինքս եմ,*

*ու իմ դավաճանությունը մխիթարանքն է չփրկված նավի անկատարության, փրկվածի ինքնահաղթահարումը՝ օրհնությունը՝ մեղքիս իմաստավորման:*

## *87.*

*(Ինքնա) ճանաչողությամբ իմացություն արտահայտողից սեփական փորձի հիմնավորում պահանջողները, առնվազն, պետք է նույն փորձն ունենան, որ կարողանան գնահատել դրա ճշմարտացիությունը, իսկ համընկնումներից դուրս՝ կան փորձեր, որոնք միակն են, մեկանգամյա են ու մեկինն են.*

*Որպես կանոն՝ ճշմարտության բացարձակը հենց այդպես է երևակվում …*

## *88.*

*Ո՛չ էլ մահով, ինչպես հաճախ է լինում,*

*չեմ ուզում հաղթահարվեն հայտնի դառնալու արգելքները.*

*ուզում եմ՝ այն ամենը, ինչ բացահայտել եմ ինքնաճանաչողությամբ,*

*անտես մնա, ինչպես անձս ու անձիցս էլ վերանա՝*

*հողացած փոշու փակից դուրս բերվի ինք-նապեղմամբ ու ինձ պես, ինքնարարմամբ, ան-հայփ մնա ...*

*89.*

***Օրորոցային, որը չի երգվել.***

*Որ չվճարես մեղքերիս գինը,*
*Պեփք է հավերժացնեմ քո անմեղ քունը,*
*Բայց ...,*
*Ու մենակությունից փրկելու անհնարինություն*
*Սփիպում է արարվել՝ իբրև քո մենությունը.*
*Հավերժական քնի փոխարեն՝*
*Ընդունել միջփնջենական արթմնությունը:*
*Ու այն, ինչ կպապմեն՝ իբրև իմ փված օրոր,*
*Եղել է պարանոցիցդ եփ քաշված ձեռքերի դող:*

*90*

*Մեղքից թորած օրհնությունն ասփվածա-յին ճաշակի թմրանյութ է, որի հարգը, նախ, որոշում է հումքի որակը, ու եթե մոլություն, ապա միայն բարձր ճախրանքի և նյութազրկող անէացման:*

*91.*

*Ես կարող էի լինել լավագույնը, եթե չլինեի իսկական: Այն, որ չեղա նաև վափի ամենան, ճրագեց արարվել գորշագույն ջնջոց՝ հարաբե-րականության:*

*92.*

*«Ինչպե՞ս ժամանակի հիմարացումից փրկել ներկան». - խորհում են անդիհնում հանդիպած անցյալն ու ապագան:*

*93.*

*Քանի դեռ չունի ՆՐԱՆՑ (նույնն է՝ սեփական) սահմաններից դուրս նպատակ, մարդու դիվանագիտությունը փիեզերավարության մեջ չի կարողանում պարզել՝ ՄԱՀԸ ԺԱՄԱՆԱԿԻ դաշնակի՞ցն է, թե՞ հակառակորդը:*

*94.*

*Արհեստական լույսի կամապաշտությունը գրավականն է խավարի հաղթության, իսկականը հաղթահարում է այն՝ ժամանակ առ ժամանակ զիջելով նրան:*

*95.*

*Սպվերը լույսի մեծագույն արարչությունն է, ու ես ուզում եմ՝ իմն անկախանա ինձնից, որ մեծագույն արարչությունը, միաժամանակ, լինի կատարելություն ...*

*96.*

*Հայելին փրոհեց մարդուն իմաստաբար, բայց մարդն այդպես էլ ինքն իրեն չհանդիպեց՝ երրորդ ՄԵԿին սերելու համար ...*

*Անասունի ամբողջականության խաթա-*

*րումից առաջացած բառաչոցը թույլ չի տալիս, որ հնչի բարձրագույնի առաջին ճիչը:*

*97.*

*Բնությունն այրիացել է, իսկ մարդը դեռ արդարանում է՝ նրան անվանելով մայր, երբ կոչված է լինել սիրող այր:*

*98.*

*Դուք երբևէ հանդիպե՞լ եք նրան, ով ձեզ շնորհակալություն է հայտնել մեղքի համար, որը ձեզ ներել է, … երբևէ … նրան, ում ինքնաբարձման ձգտումը մարդկային սահմանումով ապրվածայինից բա՛րձր դուրս է …, ուրեմն, լավագույն դեպքում, ձեզ պապահել է ինքնապահպանման դիմաց մեղադրանքից հրաժարում, կամ, պարզապես, նույնի համար՝ թքած ունենալու նուրբ դրսևորում, իսկ ինքնազոհությունն, անշուշտ, ապրվածայնություն է, բայց միայն որպես վերացարկմա՛մբ ինքնապահպանություն:*

*Իմ ձգտումը ձեր հանդիպելն է …*

*99.*

*Ամեն մենակություն չէ, որ շփման բացակայություն է, ուղղակի կան այնպիսիք, որոնց անձեռնմխելի փարածությունն է մարդկայինից մեծ: Այլից զատ, կան մենակների համայնքներ, որոնք կոչվում են ապողաբույլ:*

*100.*

*Մահվան այս դիմակահանդեսում, որը մարդիկ կոչում են կյանք, նախ անհանգստացնում էր այն, որ չէի գտնում համապատասխան դիմակ, հետո, որ՝ առհասարակ:*

*Հիմա դա իմ միակ զվարճանքն է …*

*101.*

*Ինչքա՜ն հարաբերություններ են փչացել՝ դրանց կարգավորմանը կոչված կանոնների պատճառով. ամենից զատ՝ ինչքա՜ն սրտեր են կոտրվել:*

*102.*

*Երբ ոչ պատիժ է, ոչ՝ պարգև, որը պետք է ինքնաբարարմամբ ընդունել, մարսում է ցինիզմն՝ ինչպես ընթացիկ առօրեականություն:*

*103.*

*Հոգիս հիանում է տեսարանով, որը բացվում է մտքիս բարձունքից՝ դեպի սրտիս անդունդը: Իրար ստեղծելու շարունակականությամբ՝ կաթիլ արցունքը գլորվում, բայց միշտ գտնվում է նրանց սահմանագծում, մինչև մահը կվճռի սրտին պատկանելությունը՝ մտքին թողնելով անպայմանական բարձրությունը:*

*104.*

*Իմ ինքնամեկուսացման համեմատ՝ չնչին է ցանկացած հարկադիր մեկուսացում, ազա-*

*տության համեմատ՝ ցանկացած փրկություն, որովհետև առաջինը երկրորդին, երկրորդը առաջինին է ծնում, երբ, որպես երրորդ ՄԵԿ, նրանց հետ սեր եմ անում:*

*105.*

*Որպես միտք՝ տարածականության փոխարեն նախընտրում եմ խորացում. իբրև անդունդ հաստատվել հատուկենտ, բայց առանձնահատուկ գիտակցություններում, որ տիեզերական պատահականությամբ ընտրյալները, ընդհանուր շրջանառությունից վթարվելով, փրկվեն:*

*106.*

*Փրկիչներին հենց միայն դատարկությունն էլ գրավում է, ու նա կարող է լքելով ստեղծել լավագույնին հանդիպելու տարածություն, բայց երբեք չգայթակղվել ատրվածահաճո ինքնազոհությամբ, քանզի Բարձրագույն Ես-ի խիղճը չունի անհատական դրսևորում՝ եթե գթասրտություն, ապա մեռնելուց ո՛չ մեկին ո՛չ մի բացառություն, ուստի, հագեցած բացառություններում էլ, որտեղ հայտնվում է իբրև ինքնարարման խթան, անպայման հեղինակում է մշտնջենական արնահոսում, կամ՝ լավագույն փրկչին գրավող անտարբերություն:*

*107.*

*Այն, որ իրեշի հետ ինքնաճանաչողությամբ իրեշպակը կարող է հավաքալ սեփական գոյությանը, ապա՝ կայանալ այդպիսին, հասկացել եմ՝ լինելով իրեշ, ու ինձ հայտնի չեն այլ ծագման իրեշպակներ:*

*108.*

*Եթե ընդունելի լիներ պատժի կանխավճարային սկզբունքը, ապա ցանկացած մեկը, ըստ կյանքում կրած զրկանքների, կվաստակեր առնվազն մեկ ծանրագույն մեղքի իրավունք: Ես իրավունքս կիրացնեի ճիշտ Աստծո պես՝ ինքս մնալով փապանից դուրս ..., բայց ..., ու քավությունն էլ կեղծ հասկացություն է՝ արդարությունից դուրս գտնվող արդարադատության պայմաններում:*

*109.*

*Դավաճանություն երբեք չեմ ների - չապրած խակի ճոռոմաբանություն,*

*Ինձ դավաճանողին ներել եմ - ապրողի ընկալում,*

*Ինձ երբեք չեն դավաճանել - կաթուկի իմաստնություն,*

*Ես ինձ ներել եմ - վերջն անցի (ինքն)արարում...*

*110.*

*Ձեր խիղճը ցնծում է պեսարանից, երբ պեսնում է թռչող արծվին՝ օձը ճիրաններում, ու ձեր խիղճը փոխվում է անեծքի, երբ օձի խայթոցից արծվի մահն է պեսնում: Դուք՝ խղճի բարոյականություն կրող միջակներդ, միշտ եղել եք իմասպնությանը պարպված հակակիրներ ու, լինելով հպարպության ճորպը, երբեք չեք հասկացել նրանց խորքային հարգանքը, իսկ հպարպության պարպությունից, որից պեպք է բարձրանալ, դուք սկսում եք խեղճանալ՝ քան կայիք, ավելի այլանդակ դառնալ:*

*111.*

*Ինչքան էլ ինքնարարմանդ մեկ գործոնն է, այնուամենայնիվ, ինքդ քեզ, որպես հակադրություն, անընդհապ հաղթահարելու փոխարեն՝ մի օր պեպք է վերջնականապես պապալես, որ նաև համակիրներից ազապվես ու մնաս անպայմանական:*

*112.*

*Խիղճս, որպես ուրվական էլ շարունակեց պայքարել, բայց, միևնույն է, մեղսավորիս պարպվեց: Քե՛զ, իմ արարչին սպանելու փոխարեն՝ ինքս ինձ եմ սպանում, որովհետև չեմ ծնվել փրկվելու համար՝ ծնվել եմ, որ ինքնարարմամբ բարձրանամ:*

*113.*

*Ես շփապեցի կոչվել, ապա՝ լինել ՄԵՐ, ու իմ արարումներից ոչ մեկը չհասցրեց հասունանալ՝ որպես անդին փանող հիասթափության ամենան։ Բոլորը նախընտրում են մնալ մարդանման հրեշփակ, որովհետև, գուցե, նրանց դեռ վաղ է երևակված ճշմարփությունը, որ կան ոչ թե ասփվածներ արարելու, այլ ինքնարարմամբ նրանց ընկերակցելու համար, կամ, գուցե, ինքս եմ հակված համալրել այդ մենակների շարքը, ովքեր փառապանքի հետ խաղալու զվարճասիրություն ունեն։*

*114.*

*Դասփիարակեք ձեր երեխաներին փգիփությամբ և առօրեական փեղեկություններով խցանեք նրանց միտածողությունը, որպեսզի այն, ինչ անում եմ այսօր, վաղը չսպառնա ձեզ՝ նրանց իմացությամբ, թե ինչքան չեք հասկացել իմասփնության անխղճությունն ու հպարփության չեզոքությունը, հեփևաբար, դրանց մաքրամաքուրն ու ազնիվը, որից դուրս ձեր սերը չի եղել այլ բան, քան միայն եսասիրություն, իսկ այն, ինչ դուք պափկերացնում եք իբրև հասարակություն, դրա մաս կազմող ընփանիք և բարեկամություն, ես կոչում եմ իրար վրա թքած ունեցողների փոխշահավեփ գոյակցություն։*

*115.*

*Ցավ է ոչ այնքան սրի զոհ լինելու գիտակցումը, այլ՝ որ դրանից հաճույք ես ստացել, ու, առհասարակ, գիտակցումը, որ քեզ երբեք չի վնասել ուրիշ ոչինչ, քան միայն այն, ինչ սիրել ես: Բայց ավելին, քան մարդն է, բարձրանալու համար՝ հենց ցավին պետք չէ հարաբերվել հերոսաբար (հաղթել կամ արժանապատիվ պարտվել), պետք է այն ապրել՝ որպես միակ ՍԵՐ, որն արարում է ՔԵԶ:*

*116.*

*- Ի ծնե մեղավո՞ր եմ:*

*-Խնդիրն ավելի բարձր վերցրու:*

*- Մեղքի իրավու՞նք ունեմ:*

*-Բարձր ավելի ...*

*- Պարտավո՞ր եմ մեղք գործել:*

*-Այո՛, ուրիշի նախագծում լինելու այլ իմաստ չկա, քան սեփականով առանձնանալու, արարումից՝ ինքնարարվելու:*

*117.*

*Մարդը դեռ այն կենդանին է, ով զարմանք է ապրում իրենից տարբերվող կենդանիների բանական դրսևորումներից ...*

*118.*

*Եթե ի փառս արարչի, ուրեմն մեղքով, որը լսելուց նա հեշտանք կապրի,*

*Եթե ի սեր, ուրեմն նրա գործածում՝ իր բացառիկությունը ժխտող …*

*119.*

*Եթե դուք գոհ եք, որ ծնվել եք, ես չեմ առարկում, իսկ իմ գոհունակության հանգամանքն այն է, որ ձեզանով կարող եմ առարկել ծնունդս …*

*120.*

*Ձեր մեղքերը բնութագրում են ձեր արարչին, ըստ այդմ, վստահաբար, նա փոքր է այնքա՜ն, ու ձեր հետ համակեցությունը միայն մեկ իմաստ ունի՝ նպաստել նրա հասունացմանը, ինչի համար՝ ոչ նա, այլ ե՛ս եմ ձեր գոյության սպառնալիքը, կամ, երբևէ, դուք պաշտելու եք ի՛մ արարչին, ով ինքն է ձգտում իմ տված բնութագրի բարձրին …*

*121.*

*Նեռը դրդեց մեղքերի, մեղքերը վերածվեցին սիրո. Աստծո ներմանը ոչինչ չմնաց, հետևաբար ոչինչ՝ նրանց գոյությունը պայմանավորող: Նրանց հաշտեցնող փառահեղ սպանությունը, որը կարող է իրագործել միայն Բարձրագույն Ես-ը, եղածներից միակն է, որն արարչի գոյությունը դարձնում է անպայմանական:*

*Իսկ նվաճելու համար այն, ուր հասնում ես, պետք է, նախ, դուրս գաս նրանից, ինչով փո-*

*խաղրվել ես. որտեղից էլ մեկնարկում է ինքնա-
բարչության անպայմանականացումը ...*

*122.*

*Մարդաշ ծառին խաչված, փորոտիքը թափված ու աչքերի խոռոչներում ծեղեր տնկված մողեսների, սեր անելուց բահով կտրատված, կամ կրակում մոխրացած օձերի, պարշգամբից նետվելուն վարժված կատվի, ծեծված ոչխարների և խոզերի տառապանքները իրենց դահճի հիշողության մեջ հաղթեցին բոլոր մարդկանց ու մարդկային ամենայն ինչ՝ պատկերելով Բարձրագույն Ես-ի ինքնարարման խառնարանը, դառնալով նրա ուղու և/ կամ դրա կանխորոշման խորհրդանիշը, նրա ինքնասուզման վերջին անփոփոխ հանգրվանը, իսկ ուրվականը գայլի և շան խառնածին զավակի, ում նկատմամբ նրա ընկերությունը եղել է այն եզակին, որում մարդն է մնացել հանցագործ շանը հավասարիմ, փայլատակում է ԲԱՐՁՐՈՒՄ, որտեղ նա կոչվում է ՍԵՐ:*

*123.*

*Ձեր Աստվածը խնդրում է փոխանցել, որ դադարեք այլանդակել նրա կերպարը՝ նկարագրելով դատավոր, ու այն, որ ինքը չի միջամտում դրա ժխտմանը, ձեր նկարագրությունը բացառող մեկ փաստարկն է: Ինչպես փոխանցվել էր այլ հաղորդմամբ (Ես սեր եմ, մնա-*

*ցածր ես չեմ (Թեոսոֆիա 1)՝ նա ընկեր է փնտրում, և ինքն էլ չի լինում այլ բան, քան միայն ընկեր:*

*124.*

*Ինչպե՞ս չմեղանչել աշխարհում, որտեղ կա կին, և ինչպե՞ս չձգտել ինքնարարման, քանի դեռ կինը կա …*

*125.*

*Յած գլորող խղճի և հպարտության հաղթահարումը չի ապահովում մշտնջենականություն, ուղղակի հասցնում է եզրագծին, որտեղ մեկն անպայման զոհաբերվում է մյուսի բարձրացման համար, որովհետև հենց այդպես է սահմանված: Անընդհատ նեղացող արահետը, կամ ավելի բարձրին միակցող անդունդն ի վերջո ստիպում է բաց թողնել, որ անցումը հաջողվի, ու, առերևույթ բաժանող այս հանգամանքը, տարբեր ուղիներով, բայց երկուսին նույն տեղը հասցնող միակ հնարավորությունն է, ինչը, մեծամասամբ, բաց են թողնում նաև նրանք, ովքեր կարողացել են գնալ ամենահեռուն՝ բացահայտելով միայն ինքնախաբեության խորությունը նպատակում:*

*Պետք է գիտակցել, որ այն, ինչը տրված է մեկի ինքնազոհության և մյուսի՝ դրա ընդունման վերածելու համար, չպետք է փչացնել փրկչությամբ, կամ գերեզմանին սգալու ապա-*

*կանող սովորությամբ. գիտակցել, որ ինքնաբարման մղումը պետք է նախորդի սերն ընդունելու բոլոր պատճառներին, հետո, նաև, առաջնորդի ...*

*126.*

*Ինքդ քեզ խղճալուն հաջորդող ինքնաարհամարհանքի մեջ գրավիչ վրեժխնդրություն կա. այդպես ոչնչանում են մխիթարանքիդ վրա հավաքվող մակաբույծները, առանց որոնց, այն խկապես կարող էր համարվել հարմարավետ հանգրվան: Ուստի, եթե ինքնախղճահարություն, ապա միայն որպես խայծ՝ զվարճալի սպանդ նախաձեռնելու համար:*

*127.*

*Ամրաձույլ սանդուղքի անխուսափելի փլուզումից չվնասվելու համար՝ ճիշտ է թղթից կառուցել, էլ ավելի՝ յուրաքանչյուր նախորդ սանդուղն այրել ...*

*128.*

*Մեծ հավատին պետք է նախորդի մեծ հուսահատությունը. իր մահով այսպես ուսուցանեց հայտնի խաչվածը, բայց, միաժամանակ, վերածվեց փոքր հուսախաբության, երբ խոստացավ վերադառնալ:*

*129.*

***Ո՞վ ես դու.***

*Վաղուց հակված չլինելով խնայել ինձ՝ անտեսում եմ սթափեցնող եթե-ի խելամտությու-*

*նը, որի դեպքում անգամ սեփական հայացքս չի կարող դիմանալ խենթացմանն այս ծավալի մեղքերի, որոնք քո հայտնությամբ մեկտեղվում են իմ խառնարանում ու դուրս գալիս դրանից մեկացած՝ անմեղությամբ՝ ամեն, ու քո բովանդակությունը բացահայտելուն ուղղված հարցով ճանաչվում՝ արարվում է իմը՝ հարցիս մեջ փոխելով միայն այն, որ դու-ն վերածվում է ես-ի՝ առանց հարցականի ...*

*130.*

*Միամտությունս, ճիշտ Աստծո պես, անկախ բռնաբարվելու կոչտությունից և քանակից, մնացել է կույս, բայց, նաև, ճիշտ Նեռի կեցության պես, անկախ մեծ մեղքերի զրպարտանքից՝ հավատարմությունը դիտարկում է մանրուքներում և չի սահմանում դրանցից դուրս:*

*131.*

*Հանկարծահայտը, պատահում է, թվում է փրկություն՝ մինչև առաջին կրակոցը, ինչից պարզվում է՝ դարանակալած որսորդ է, ում վրիպման դեպքում էլ, սակայն, ստիպված ես բացահայտել, որ նրա թիկունքում գտնվող բնությունը վաղուց պղծված է բարձր գոյության համար: Դրանից հետո որսորդը դառնում է բաղձալի հրաշքի միակ պատկերումդ ...*

*132..*

*Առնվազն, դահիճներից փրկվելու համար՝ արժե լինել այլ բան, քան մարդն է, բայց և քեզ սպանելու առաջին փորձը ձախողած որսորդին էլ պետք չէ կրկին հանդիպել, քանզի նրա ձգտման մեջ, այդուհետև, գերիշխում է հպարտությունը:*

*133..*

*Առաջինը, ինչ փնտրում եմ սեր, մարդասիրություն քարոզողներին նայելիս, գամերի թողած ապիներն են նրանց ափերին, ու ինքս ինձ էլ, առանց հարության խոստման, վաղուց թաղել եմ՝ դրանց անգոյությունը չխախտելու համար:*

*134..*

*Միամտություն է, միայն նրա համար, որ իշխանությունը կազմված է հայրենակիցներից, համարել լավը օտարակալությունից, իսկ ճշմարտությունը նրանում է, որ իշխանությունների միջև դա միակ տարբերությունն է, ու, անկախ պատմագրության մոլորեցումից, իրականությունն այն է, որ իշխողը երբեք ընտրող չէ, նա միշտ ընտրյալն է հպատակի, հակառակ դեպքում՝ անհասկանալի կլիներ, թե ինչու՞ մահն ամենաիրացված իրավունքը չէ:*

*Հենց միայն նրա համար, որ մեռնելը շարունակի համարվել պարտականություն, հպա-*

*փակին նախընտրելի է հայրենակցի, էլ ավելի՝ արյունակցի իշխանությունը:*

*135.*

*Այն, որ աղոթավայրերին սովորներն իրենց պաշտամունքի կերպարի մարմնանալու դեպքում նրան արհամարհելու, կամ դրամով նվաստացնելու են, ինչպես իրենց ուխտի ճամփին հանդիպող անտերունչի, բայց երբեք նրա կողքը չեն նստելու զրույցի, գիտի նաև նա, ում այլանդակել են ծեսերում, ուստի, երբևէ որևէ հիմարի, կամ հանճարեղ ծրագրողի կողմից կրոնի վերածվելու փոխարեն՝ նախընտրում եմ մնալ ինքնարարման համաճարակի՝ իր խրախճանքին սպասող, դարանակալած վարակ:*

*136.*

*Իմ ոճը հանրայնացումից պաշտպանում է բովանդակությունը՝ հասարակ լեզուներին հայտնվելն ու մաշվելը՝ մինչև սովորականություն: Ես ընկալվում եմ միայն անդնդախոր հոգիների կողմից, բայց անգամ նրանք, ինձ ճիշտ մեջբերելու համար, չեն կարող ապավինել հիշողությանը:*

*Ես չեմ դասակարգվելու ու չեմ հայտնվելու որևէ նախընտրանքում, հավաքածուները ինձ չեն հերթագրելու, չեմ մեկնաբանվելու ու նկարագրությամբ չեմ փոխանցվելու, ինձանից հիշվելու է միայն անունս՝ իբրև ինքնախոսության*

*կողմ և ինքնաստվածացման հակվածություն նրա, ով զգացել է ինձ հարազատ, բայց գիտակցաբար չի հասկացել՝ ինչու, ու ինքնարարման մեջ ժխտել է հարցը: Անվամբ գրավելու եմ բոլորի իմացությունը, բայց ինձ ներծծելու են միայն բարձր էությունները, որոնցից յուրաքանչյուրի համար լինելու եմ իր սեփականը՝ գոյությամբ կամ ու չկամ:*

137.

*Նա, ով սովոր է նայել ուղիղ, վարժվում է բարձրացող տեսադաշտից դուրս մնացողների, վերջիվերջո, բոլորի արհամարհանքին: Այն, ինչ մյուսներին թվում է փոխադարձություն, նրա ինքնաժխտումը բացահայտում է իբրև ինքնադիտում, որից տեսնողն ինքնարարվում է, կույրը՝ անծին մնում:*

138.

*Հեշտ է ինձ իմ դեմ օգտագործելը, հետևաբար, նաև հաղթելը, բայց անգամ նա, հաղթանակած հայացքը հպարտությունից շեղելով, իրեն չի կարող հայտնաբերել այլ տեղ, քան տիրույթում, որն արարման հիմքով ծագած իրավունքով՝ բացարձակորեն ինձ է պատկանում, միաժամանակ բացահայտելով, որ մեկնարկում էլ չի ունեցել ինձանից անկախ նախաձեռնություն:*

*Ուզում եմ, երբևէ, ինքնահակասություններս մատուցել նրա՛ բարձրացմանը, ում, այլ*

*տեղ, քան տիրույթիս բարձրակետին իր հասնելը, չեմ ցանկանա պարտվել …*

*139.*

***Ինչ եմ ուզում, երբ այլևս անհնար է ոչնչացնել մեկնարկը,***

*թերևս այն, ինչ արարիչները, եթե հնարավորություն ստանային սկսել նորից՝ տեսնելով իրենց արարումների իրական կիրառումը: Նրանք, բիհարկե, չէին կարողանա զսպել ստեղծելու կիրքը, բայց, անպայման, կձգտեին դրանք հասցնել աստիճանի, որից ոչ ոք չէր փրկվի …*

*140.*

***Առերևույթ բնության հետ.***

*Քո առաջ, առավել ևս քո դեմ, սին են բոլոր մտքերս, և դու, ընդամենը ինձ մենակ բռնացնելով, կարող ես մտածողությունս անէացնել մինչև զրոյականություն, բայց քո՝ իբրև անպարտելի բնության ծնկի բերող այս հաղթանակի դեմ կա հավասարակշռող մեկ փաստարկ՝ դու չես կարող ինքդ քեզ վայելել այնպես, ինչպես ես եմ քեզ վայելում, հատկապես, երբ պարտվում եմ քեզ, ու մինչ դու շարունակում ես ինձ հերքելու փորձերդ, տիեզերքը փաստարկիս շուրջ հետևություն է անում:*

*141.*

*Որպեսզի բացարձակորեն փիրես, պետք է ոչնչացնես, որ չմնաս գերին նրա, ինչ ստեղծել ես, կամ գերադասես ստեղծածիդ անպայմանական գոյությունը՝ նրանից հեռքես ինքդ քեզ: Մնացած բոլոր դեպքերում՝ կա միայն փիրելու պայմանականությամբ արարչության կիսափություն, քանզի այն, ինչ ստեղծում ես, ստեղծում է քեզ:*

*142.*

*Իրենց իսկ բնորոշմամբ՝ երջանիկ ու դժբախփ մարդկանց շափ եմ փեսել, կարելի է ասել՝ բոլորին եմ փեսել երջանիկ ու դժբախփ, բայց հենց միայն նրա համար, որ փեսել եմ, կիսափ է եղել ինչպես նրանց երջանկությունը, այնպես էլ դժբախփությունը, իսկ չափը ճիշփ համապափասխանել է ուշադրությանը, որը նրանք փնփրել ու ինձանից միշփ մերժվել են:*

*Այն, ինչը բացահայփվում է միայն ուշադրության ինքնամերժմամբ, իր ամբողջականությամբ լռեցնում է և ուրիշների մեջ էլ, այո՛, հայփնաբերվում է՝ միայն, ու հենց միայն լռություն էլ կոչվում է ...*

*143.*

*Եթե գնացել է ցամաքով, վերադառնալու համար պետք է ստիպված լինի լողալ: Եթե գնացել է ջրով, վերադառնալու համար պետք է ստիպված լինի թռչել: Ի վերջո՝ պետք է ստիպված լինի դառնալ այն, ում հայտնվելը կմնա առեղծված:*

*Եթե գնացել է անվերադարձ, անհետացել, կամ չի էլ հայտնվել, միևնույն է, երբ ճանապարհն անպայմանական է ու բացառապես ինքնարարման է:*

*144.*

*Հիասթափություն է նաև, երբ վրա հասած ողբերգությունը փանում ես ավելի հեշտ, քան ակնկալվում էր դրա պատկերացմամբ:*

*Ես, իմ ակնկալիքներով, հասարակացրել եմ ցանկացած հնարավոր ողբերգություն, որն իմ պատկերացումը չի (համա)հեղինակել ...*

*145.*

*Ես հասել եմ այն անկեղծությանը, որ ինձանում կեղծիք փեսնելը միայն սեփական կուրության ախտորոշում է: Ես այնքան ու այնպես եմ պատժել ինքս ինձ, որ ուրիշի պատժելն ինձ ինքնին հանցանք է: Ես հասել եմ այն ինքնանեբմանը, որ ուրիշի չներելն*

*ինձ ինքնին մեղք է: Վերջապես, ես արարել եմ ինքս ինձ ..., բայց, որովհետև, ուրիշից դուրս, մարդուց այլ ...*

*146.*

*Սերը սրտին վերագրելն անասնականություն է. դրան անհաս մարդկային գիտակցությունը, ինչպես իրեն անհասկանալի ամեն ինչ, շղթայում է հույս/հավատով և փեղափոխում գլխից ներքև: Այն, ինչ զգում են իբրև սեր, ընդամենը կրծքավանդակում փքված հպարտություն է և/կամ որովայնում նեխած խիղճ, ու հենց միայն նրա համար, քանի դեռ զգայական բան է, դրանից պետք է ազատել միտքը, ինչպես կեղտից մարմինը:*

*Իսկ սերն այլ բան չէ, քան, միայն, Բարձրագույն (ինքնարար) Բանականություն ...*

*147.*

*Միայն, երբ ինքնաուսուցման մեջ հույզերից և ակնկալիքներից մաքրված մտքերում հանդիպեց անուն(ներ), հասկացա, որ աղոթքը հենց դա է ու երբեք այլ բան չէ: Հիմա իմ հայացքը փնտրում է անտես(ներ)ին, ում ինքնահերքման մեջ հանդիպել է իմ անունը, քանզի տեսանելիները չեն բավարարում պատասխանին հարցի, թե ինչու եմ դեռ ապրում:*

148.

*Դեպի ինձ առաջին կուսական մաքուրի ձգտումից սկսած, երբ ես արդեն հրեշ էի, Նեռը պլանավորեց ինձ մաքուցել իբրև հաղթական փապարկ Աստծո դեմ, բայց նրանց քանակն արագ դարձավ նրա հուսախաբությունը, ինչպես առաջինի մոլորեցման վարկածը՝ Աստծո չարդարացված միխթարանքը: Նրանք փարակուսանքի մեջ են՝ ինքնարարման արթնացումը սպառնում է վերաճել համավարակի ...*

149.

*Ճակատագիրն այլ բան չէ, քան միայն այն, որ ցանկացած ընտրություն փանում է ինքնառերեւման: Դրա անխուսափելիությունից չի կարող շեղել ոչ մի ընտրություն՝ անգամ ապագայի իմացությամբ, կամ անցյալում կրկին հայտնվելու հնարավորությամբ արվածը, ինչից չի փոխվի ոչինչ, բացի անգիտակցականության մեջ առկա իրողության գիտակցումից՝ այն դարձնելով արդեն ցնորուն կրկնություն:*

*Ճակատագիրը կարող էր լինել անասնական անհոգության տրվելու լավագույն փապարկը, եթե չլիներ պարադոքսալ ճշմարտությունը, որ անփոփոխելին հնարավոր է փոխել այն ընդունելով, հետևաբար, այն ինքնարարման ունակության մեկ փապարկն է ու, նաև, դրա հնարավորությունը:*

*150.*

*Մարդու և ժամանակի միջև սպացված ամենամեծ փոխադարձությունն իրար սպանելն է, որտեղ ժամանակը հանդես է գալիս փոխադարձող, մարդը՝ հետապնդող ուրվականից պաշտպանվող:*

*151.*

*Երազելուց բացի, ըստ հարկի, պետք է կարողանալ թաղել այն՝ անկախ նրանից, թե ինչքան է մեծ և ով կա նրա մեջ, որ երազանքը չսպրկացնի, ու ոչ միայն թաղել, նաև կոխոտելով քարացնել և մինչև փսխելը վրան խմել, որտեղ, այլից զատ, հենց միայն նա, ով այդ պահին շփում է մեջքդ, կա՝ իսկական ընկեր:*

*Իսկ հարկավորության պահը հատկորոշելու համար՝ պետք է ընդամենն իմանալ, որ այն չկա, պետք է թաղել առանց դրա, որ հայտնվի ընդունելու անակնկալ, կամ, իբրև հյուծող ակնկալիք, անհետ մնա:*

*152.*

*Ունենալ այն, ինչ ունի երկրորդը, ընդհուպ մինչև երազանք/երևակայություն, արժեզրկում է ունեցածը, կրկնելիությունը՝ ունեցողի գոյության հիմքը:*

*Ոչ էլ ինքդ քեզ սիրելով, այլ՝ ինքդ քեզ ծնելով, որպեսզի լինի մարդու մեկը, որը չի պղծվել երկրորդի սիրով, հետևաբար՝ ան-*

*կրկնելին: Ինքնարարման համար, սակայն, պղծվելը ոչ միայն իմաստ, նաև անհրաժեշտություն ունի:*

*153.*

*Այնտեղ, որտեղ ինձ ֆիքսում են զգայարաններով, ես բացակայում եմ ինքս ինձանից, ու եզակի դեպքերում, երբ կա հարազատություն, բացակայությունս ինքնազոհություն է՝ արհամարհանքի փոխարեն:*

*154.*

*Նրանք, ում երբևէ համակրել եմ, ի վերջո պետք է իմանան, որ մարդու մեջ ինձ միշտ գրավել է անմարդկայինը, որն ինձ համար հակիմաստ է մարդկայինին՝ միայն իբրև վեր, կամ դրա ներուժ: Եթե այստեղ տեղին է տեսնել գնահատանք, ապա, առավելապես, իմ հիասթափության:*

*155.*

*Մինչդեռ հավատացյալն ու անհավատը երկուստեք չգիտեն, որ աշխարհը Աստծո և Նեռի հանդիպման անկողին է, Աստծո մեջ ձևավորվող ու/բայց Նեռի արգանդում հասունացող ճշմարտությունների որբատուն է …*

*156.*

*Ոչ էլ գերեզմանատներում, որոնք ավելի վառ են արտահայտում մարդկանց անհա-*

*վասարությունը, այլ պատկերացման մեջ, որ տվյալ պահից հաշվարկած, օրինակ՝ 200 տարի հետո ներկայում կենդանի մարդկանցից, անգամ նոր սաղմնավորված, ոչ մեկը ողջ չի լինելու՝ եւ ազատվում էի հավասարության փտախտից: Հիմա պատկերացումս սահմանափակվում է հաջորդող օրվա բացակայությամբ:*

*157.*

*Սրբերն էլ դավաճանեցին մեզ հենց միայն նրանով, որ մեզ հետ ապրելուց հետո շարունակեցին մնալ սուրբ:*

*158.*

*Ձեր պատկերած միակ Աստծուն պատկերացնում եմ իրական՝ պատվիրանները դիտարկելով սեփական սխալով ճանաչելու արժանահավատության կոնտեքստում և ուզում եմ հասկանալ, թե ինչու՞ է խմբագրել անցյալը, որտեղ, գուցե, մարդուն իսկապես եղել է հարազատ: Արդյունքում, չեմ հասկանում միայն դեպի ապագա միտված մարդկային երևակայությունը, ինքնաճանաչողության կիսատությունը, ինքնարարման ժխտումը:*

*159.*

*Այն, ինչ երևում է ինքնասուզման բարձրությունից, իմացաբանական փոխկապվա-*

*ծությունններում որպես զանգված, որում բոլորն են, ընդամենը մարդկային իմացությունների ճահճակալած շփեմարան է, որտեղ առավելագույնը, որ կարողանում են դառնալ ոմանք, գորտի վերածվելն է, որոնք խժռում են այն խեղճերին, ովքեր ո՛չ ճահճում են գտնում իրենց ինքնուրույնությունը, ո՛չ էլ կարողանում են բարձր թռչել ավելի, քան գորտի լեզուն է:*

*Մեզ՝ բարձրում ճախրողներիս, զվարճացնում է՝ մե՛կ արծվի փետուրներում պապահաբար հայտնվածների, մեկ էլ՝ օձի մարտողական համակարգով անցնողների մահը՝ իրենց համար անսովոր պայմաններում, ու ներքև նայելու այլ առիթ մեզ չկա:*

*160.*

*Իսկ դուք փորձեք ուրիշների մեջ հրաժարվել ինքներդ ձեզանից ու տեսեք, թե առանց ինքնավկայության ի՞նչ է մնում նրանցից, մնու՞մ է, արդյոք, կապող որևէ բան:*

*Բարձրագույն Ես-ի(ս) անպայմանականությունը նրանում է, որ հրաժարվելու փոխարեն՝ ուրիշների մեջ սպանում է ինքն իրեն, ու նույն կերպ իրենից ձերբազատ է վերաբերում բոլորին:*

*161.*

*Մարդուն բնորոշ և մարդկային համարվող պայմաններում բաժանումն ինքնաճանաչողության, նաև ուրիշի նկատմամբ չգիտակցված սերը ճանաչելու լույս է, մահը՝ ավելի, երբ մերձավորին սիրելն այլ բան չէ, քան, միայն իրար մեջ ամենքի ինքն իրեն սիրելը, երբ մեկը մյուսին գրավելու, մերձենալու, փիրելու համար՝ իր մեջ վերցնում է նրա ուրը և աճեցնում նմանակին, ինչին եսասիրությունը չի կարող անտարբեր մնալ, ապա դարձնում է այն, ինչ դիմացինը կցանկանար տեսնել ինքն իր արտացոլանքում: Բայց անգամ սրանում է կիսատ մարդկային սերը, երբ մեկը մյուսի կլանած նմանակին իր մեջ չի կարողանում փիրելու ցանկությունից ավելին բարձրացնել, որին ձգտելով՝ իսկականն ինքն էլ կդառնար ավելին, քան՝ էր:*

*Մարդուն բնորոշ պայմաններում՝ Բարձրագույն Ես-ի սերը, իբրև ինքնարար բանականություն, միայն շուրջը սփռվող մահվան լույսի շողերին է առնչվում, երբ քանի դեռ ձգտում է մերձավորում ծնվել՝ նրան էլ ծնել, մերձավորը նրա մեջ իր մահկանացուն է կնքում:*

*162.*

*Ինչքան քիչ է ինքնաճանաչողության իմաստնություն մեկին փոխանցելը ու ինչ-*

*քան անիմաստ՝ փոխանցելը բոլորին, երբ փոխանցելը, միաժամանակ, ընդունողի ինքնաբացահայտումը չէ, առանց որի ինքնաբարում չկա, հետևաբար՝ չկա նպատակը ճանաչողության:*

*163.*

*Ամբոխի ոգևորությունը լուցկու նման բան է՝ դյուրավառ է և թեկուզ այրման մեջ միշտ անկեղծ, բայց ինչպես էլ կառավարվի, չի կարող վառվել ավելի երկար, քան լուցափայտի երկարությունն է: Նա, ով ուզում է մնալ ամբոխի ոգեղեն հիշողության մեջ, պետք է գտնվի նրան նախանձագին անհասանելի՝ բարձր ավելի, քան կրակի բարձրությունն է, և չտրվի մոլորությանը, որ քաղաքակրթական որևէ փաթեթավորում կարող է փոխել նրա էությունը:*

*164.*

*- Մարդով հետաքրքրվող մարդ,*

*Ապա ուզում եմ իմանալ, թե ինչ տեսակ անասուն ես, որին հետաքրքիր է մարդը, մի՞թե Աստված ես ...*

*165.*

*Հոգին մարմնից պահանջում է ավելին, քան համաձայնում է տալ բնությունը, իսկ կամքի հաշտարարությունը, եթե հաջող-*

*վում է, ապա միայն ի վնաս հոգու: Բանակցային շղթան կտրում է միայն ինքնազոհությունը՝ ինքնարարումն ընդունում է նաև բնությունը ...*

*166.*

*Մոլորություն է կարծելը, թե իրար մասին իմանալը մերձեցման ուղի է: Ծանոթացման պահից ներ՝ այն օտարացում է ամբողջականությունից, որը կոչվում է ԳԻՏԵՄ, մինչև կիսատություն, որը գիտակցականորեն հնարավոր է տեղավորել: Չի լինում շարունակաբար սեղմվող ձեռք, առավել ևս մշտական, որ հանկարծահայտ մահն էլ չկարողանա բռնացնել մենակության մեջ, իսկ եթե պատահում է, ապա, միայն մոռացված իմացությամբ վերականգնված ԳԻՏԵՄ-ով, որն էլ հենց հանդիպեցրել էր:*

*Վերջապես, հենց միայն մենակության մեջ՝ երբեք օտար չենք, ու չարակամ չենք ոչ մեկին:*

*167.*

*Այո՛, շատերն ունակ չեն ավելիին. արժե նրանց կամենալ երջանկություն ...*

*168.*

*Սիրահետող աքլորի և սիրահետվող հավի հարաբերությունը չի կարող վերածվել*

*ավելիին, քան մեկանգամյա համեղ փափական է, կամ քիչ պարբերականությամբ ձվածեղը՝ միջանկյալ ճփարփաղրությամբ: Իսկ սա ամենափարածված մոդելն է կին-տղամարդ հարաբերության և մախումը ներուժի՝ ինքնարարման:*

*169.*

*Դուք սերը գնահատում եք մշտական ներկայությամբ, ես՝ վերադարձների շարունակականությամբ. բայց, թե ամեն անգամ քանի սանդուղ է պետք ավելին բարձրանալ:*

*Ձերն ինքնապաշտումն է, իմ ճանաչածը՝ ինքնարարումը:*

*170.*

*Չի կարող մահանալ այն, ինչը չունի խիղճ և հպարտություն: Գոյաձևի հարափոփոխությամբ գոյության մշտնջենականության մեջ՝ մահկանացու են հենց միայն խիղճն ու հպարտությունը, ուրիշ ոչինչ: Հենց միայն դրանք են ենթակա ժամանակին, որում մեկը սողում է ինքնապանվելու, մյուսը ճախրում՝ սպանվելու հակվածությամբ, բայց դրանցից ոչ մեկը չի կարողանում հաղթահարել ժամանակի փականը, ու, ի փարբերություն ամենայն թաղելիների, դրանց հուղարկավորությունը ծես է՝ դափարկ դագաղով:*

*171.*

***Օրորոցային ինքզինքը՝ Բարձրագույն Ես-ի.***

*Ցավով բարձրացողը չի կարող հրեշի չվերածվել: Նսջիր, մանկիկ՝ մեղքերիս ծծկան, բարձրացողին՝ փեր, բարձրանալու(դ) այլընտրանք՝ չկա …*

*172.*

*Առաջնորդման շարունակական հաջողություններ է պետք մաղթել նաև նրան(ց), ում շուրջը ձևավորվում է ամբոխ: Գնահատելի է այն ամենը, ինչը «մենակներիցս» հեռու է պանում փգիփությունը, թեկուզ, երբ դա անասնակեղփն է, որին, խոնավությունը կորցնելուց անմիջապես հետո, լքում են:*

*173.*

*Թե իմանաս ու ասես՝ իմասփավորված ինչքա՜ն քիչ բան է պետք երջանիկ լինելուդ համար, առաջնահերթ չեն ների նրանք, ովքեր քեզ երջանկություն են ցանկանում:*

*Ու սա ոչ ուրիշների մեղքի, այլ այն մասին է, որ երջանկությունը երբեք լինելիության իմասփ չէ, հեփևաբար, անիմասփություն է՝ իբրև մաղթանք:*

*174.*

*Միջակության մեջ, որտեղ էտալոնը լավ մարդն է, բարձր ճաշակն էլ չի կարող չհամարվել անմարդկայնություն և դրա ինքնաբարչությունը չի կարող միաժամանակ չծնել ինքնաոչնչացման հակում, ու լոկ այն բանի համար, որ ամբոխն ունակ չէ խժռել առանց թերմացքի, այն կրողը տրվում է անհապաղ, որտեղ, սակայն, չի գտնում. սպեղծում է ինքնահոշոտման նրբազգաց երախ:*

*175.*

*Մարդկությունը հավաքականորեն չունի անսասանականությունից բարձր գոյության հնարավորություն ...*

*176.*

*Մահվան ահի դիմաց ԱՌ ԻՇԽԱՆՈՒԹՅՈՒՆ ԿԱՄՔՆ ավելի հաճախ է զիջում, քան ԿԱՄՔՆ ԱՌ ՃՇՄԱՐՏՈՒԹՅՈՒՆԸ, ավելին՝ մահվան ահը, հաճախ, հենց ծնում է ճշմարտության ձգտում, իսկ անմահությունը, առավել ևս, բացառում է իշխելու հակումը:*

*Այլից զատ, (ինքնա)ճանաչողությանս գրգռում է Նեռի այդչափ համառությունը՝ ճչացող, բայց չլսվող ճշմարտության զգացումը ...*

*177.*

***Հիասթափության դիրքավորություն.***

*Երբ հանկարծ բացահայտես, որ իբրև քայլելուդ հող՝ եղել եմ թվացյալ, քարի պես ցած ընկնելու փոխարեն՝ վայելիր թևեր ունենալուդ բերկրանքը, քանզի բարձրացումդ կա իրողություն:*

*Եվ թող քեզ չշփոթեցնի ինքնադիրքմանդ բացահայտումը, որ հիասթափությունդ էլ է եղել իմ դիրքավորությունը:*

*178.*

*Ճշմարտությանը միայն հետաքրքրասիրությամբ մոտենալը սպորտություն է, ինչպես միայն կամքի վարժեցման համար ցավն ընդունելը՝ տխմարություն:*

*Հարցը միշտ իր մեջ կրում է ԳԻՏԵՑԱԾԻ (ամենի) մասնակի իմացություն, որի ամբողջականացումը երբեք չունի նշանակություն որոշման համար, որը կարող է(ր) լինել մասի իմացությամբ: Ուստի, եթե ԳԻՏԵՑԱԾԻ գիտակցականացում, ապա միայն ցանկացած պատասխանով ապրումը լցնելու հասունությամբ, կամ՝ ԳԻՏԵՑԱԾՆ ապրելու հասուն լռություն, ինչպես ցավն ընդունելն է իմաստավորված՝ միայն հանուն բարձրացման:*

*Վերջապես, ճշմարտությունը չունի լսելի լինելու առաքելություն, առավել ևս, չունի*

*ավերելու հակվածություն. այն միայն ունի ապրելու առաքելություն, որի համար կամքը բնավ որոշիչ գործոն չէ. պահանջվում է ցավերանության վավաշոփություն:*

*179.*

*Քան երաժշտությունը, ոչինչ այդչափ ցույց չի տալիս ակնթարթի անեզրությունը ու, միաժամանակ, ժամանակի սահմանափակվածությունը: Ոչինչ ավելին չէ՝ իբրև անդինյան գոյության հիմնավորում՝ իբրև մարդկային գոյության անդինյան ծագում/միտում…*

*180.*

*Այո՛, (ինքնա)ճանաչողության մեջ փորձն ունի առանցքային նշանակություն, բայց հետույքով հասկացածը, այնուհետև, պետք է ընդունել գլխով՝ նափելու անհարմարություն չունենալու համար:*

*181.*

*Արդյոք մեկօրյա կյանք ապրող թիթեռը հասցնու՞մ է գիտակցել մահանալու լինելիությունը և/կամ ձեռք բերել մահվան բնազդային ընկալում: Եթե այո, ապա անգամ նրա կյանքում կա առնվազն մեկ կրկնություն:*

182.

*Թե ինչպես է անգիտակցականությունը հարաբերվում գիտակցությանը, նույնն է, թե ինչպես է զրոն հարաբերվում թվերին:*

*Այն, ինչ կոչվում է գիտակցականացում, այլ բան չէ, քան զրոյի սահմանման ձգտում, ու չկա տարբերություն՝ ձգտումը բացասականի, թե դրականի տիրույթից է, բայց հենց միայն այն, որ թիվն անսահման բաժանելի կարեգորիա է և ցանկացած դեպքում ինչ-որ ինչ է ոչնչի համեմատ, զրոն միշտ դուրս է մնում բացարձակ գիտակցականացումից ու, պայմանավորելով թվերի գոյությունն ու սահմանումը, ինքնին մնում է անպայմանական:*

*Այն իր բովանդակությամբ ամեն է, սահմանմամբ՝ ոչինչ, որն իր մեջ կրում է ընտրելիության կեղծից զատված, որպես միջնակետ տեղակայված, մեկ՝ միակ ճշմարիտ հավատը՝ իբրև իմացության կիսատացումից անկախ ԳԻՏԵՄ:*

*Ինքնաճանաչողությունը հենց գիտակցության զրոյականացումն է, ինքնարարումը՝ զրոյականության արարչականությունն իբրև բացարձակ բանականություն:*

183.

*Զրոյի մեջ (ինքնաճանաչողություն)՝ անչափելի անսահմանություն:*

*Ջրոյից դուրս (ճանաչողություն)՝ չափելի անսահմանություն, որտեղ դրական և բացասական փիրույթները ժամանակի (գիտակցության) մեջ սահմանում է զրոն՝ ձևագոյացված ակնթարթով:*

*Չափելի անսահմանությունը հնարավոր է թվարկել (իմացականացնել) որի համար էլ հենց, այն միշտ մնում է կիսատ և անչափելիության հարաբերակցության կիսատումից փրկում է բազմակետը, ընդամենը ...*

*Անչափելի անսահմանությունն անհնար է թվարկել, հետևաբար, այն միշտ մնում է ամբողջական («ինչն է, որ նա իր մեջ կրում է, բայց իրենից ԲԱՐՁՐ Է ...» .- Թեոսոֆիա 176):*

*Ժամանակի (գիտակցության) բացառումը չեզոքացնում է շրջանագիծը, ու այն, ինչ ժամանակով սահմանվում էր իբրև իմացականության դրական և բացասական փիրույթներ, վերածվում են շրջանագծից միջնակետին անվերջանալի ձգվող շառավիղների երկայնորդների՝ հակառակ ուղղությամբ, և դրանց անսահմանությամբ դադարում են առանձնանալ իբրև շառավիղ (ԱՄԵՆ):*

*Ըստ այդմ, ինքնաճանաչողության այն եզրը, որից մեկնարկում է ինքնարարումը, չունի հասնելու արտաքին, կամ ներքին բարձրակետ: Այն, ինչ կոչվում է բարձրա-*

*ցում, այլ բան չէ, քան միայն շրջանագծի վերացում…*

*184.*

*Ձևավորման որոշակի աստիճանից հետո մարմնի ինքնաոչնչացման և դրան հակառակ ուղղությամբ մարդկային գիտակցության ձգտումների առերևույթ հակասականությունը կարող էր համարվել լոկ մարդկային մոլորության հետևանք, եթե չլիներ նաև բնության՝ իբրև մեկ մարմին զրոյականացման ձգտումը, որում մարդը հավաքականորեն բացառապես դրական և ամենաարդյունավետ գործոնն է:*

*Զրոյականացման ձգտմանը, այն չափագծում, որն իր մեջ ներառում է բնությանը, համապատասխանում է բանականության բարձրագույնը, ու այս չափումների համակցությամբ է, որ մարդն ա՛յլ բան է հավաքականորեն, այլ՝ անհատապես, ու միայն վերջին կոնցեպտում է հնարավորությունը՝ լինել ավելին, քան մարդն է, որն այլ բան չէ, քան գիտակցության արարչական զրոյականացում՝ առ բարձրագույն բանականություն:*

*Վերջապես, հենց միայն նրանում, որ ցանկացած օրինաչափություն միաժամանակ միտված է ոչ օրինաչափի հաղկորոշմանը, ընդհանուրը՝ հատուկի, քանզի, քան առանց դրա ձևավորման, չկա զարգացում,*

*հետևաբար գոյության այլ պայման, անհապապես կա երկու ուղի՝ հավաքականորեն միջոց, թե՛ անհապապես նպապակ, ու սրա անընդրելիությունը ուղիղ վկայությունն է առ այն, որ փիեզերքն ինքնարարվում է զրոյականացման և ձևագոյացման մեկ կամքի շարունակականությամբ: Այն զերծ է գոյության լճացումից միայն այն պապճառով, որ ունի ինքնարար շառավիղների ձևավորման արարչականություն, որտեղ նրա կամքով հափկորոշված մարդը կարող է (պարտավոր է) լինել առանձնյակ:*

*185.*

*Որ սարին էլ կարող է լիճ գոյանալ, օրինակն է այն բանի, որ ամբոխից վեր կանգնելը փրկություն չէ լճացումից, ավելին՝ հենց փրկվելու (չմեռնելու) ձգտումն էլ լճացնում է: Ուստի, ցած նետվիր ինքնաճանաչողության բարձրից, որին հայտնվել ես հանկարծակի, կամ ինքնարարման կիրքն ես կորցրել անապաելի, քանզի, երբ ոչնչի եզրին հապաղում ես իբրև ինչ, մեկ (կամ մի քանի) ճամփորդական արահետով արժեզրկումից բացի՝ չի սպասվում ոչինչ:*

*186.*

*Ես էլ, ինչպես շատերից մեկը, ժամանակի հուքի մեջ արժեքավոր շատ բան եմ*

*կորց(նում)րել (թեկուզ իբրև իրական հնարավորություն և պոտենցիալ), բայց չկա անարժեք ոչինչ իմ ունեցածում, որոնք նաև իրարամերժ են, բայց լոկ այն պատճառով, որ չափազանց նուրբ է դրանց ներդաշնակությունն օտար հայացքի՝ անգամ իրենց իսկ համար:*

*Ու եթե կա ինձ սոցիալական գոյակցության անհարմարություն, ապա միայն սրանում, մնացած ամենայն ինչ, ընդամենը, ինքնարարման դիմաց շարունակաբար վճարելու գին է, որն անում եմ կանխիկ, հաճախ էլ՝ կանխավճարով, ինչպես արժեքավոր «կորուստները», որոնք թող(նում)ել եմ անցյալում:*

*Ես էլ, ինչպես շատերը, բայց ոչ ինչպես ամենքը ...*

*187.*

*«Բացարձակ ոչինչ չի լինում» միտքը, ընդամենը, բացարձականացված հարաբերականություն է, ու այն սահմանադրական ճշմարտություն է՝ բացառապես միջակ գիտակցության, ինչով այն ցածր է անսասանական բացարձակից:*

*Միջակ գիտակցությունը, ճշմարտության բացարձակն էլ՝ ինչպես բացարձակ ամեն ինչ, անպայման սաոցացնում է մահվան հետ, ինչում անգիտակցաբար ( իբրև իր*

*փրկություն) շոշափում է փիեզերականությունը, որ անդինը փիրույթ է, որտեղ իմացությունը զերծ է մեղադրանքից, բայց, որովհետև, այնտեղ(ից) իմացությունն է զերծ հարաբերականությունից:*

*Բարձր գիտակցության համար՝ մահը բացարձակի իմացությանը նախորդող հանգամանք չէ, առավել ևս փրկություն չէ ...*

*188.*

*Քանի դեռ ազատ է կամքի արտահայտման մեջ, ինչը նախ պտղաբեր ժամանակահատվածի հանգամանք է (կենսաբանական ժամացույց), կնոջ ընտրության պատճառներում տղամարդն ինքնին ունի ավելի նվազ նշանակություն, քան երկրորդականն է: Առաջին (միակ) պայմանը բխում է ներսեռային պատերազմից, որտեղ կինը, բոլոր հնարավոր միջոցներով (իսկ միջոցների կատարածուն միշտ տղամարդն է) ձգտում է գերակայել իր իսկ սեռում և նվաստացնել ամենայն կանացին, որը նա բնույթով ամենալավն է զգում՝ իբրև «կրոն»: Նա իր ձգտման մեջ մոլագար է այնքան, որ եթե անգամ իր պատերազմի կոնտեքստում (որը նախ աշխարհն է) չի հասնում ցանկալիին և ստիպված ընտրություն է կատարում կենսաբանական ժամացույցի զրոյացումից հետո, կամ դրա ավարտին մոտ, կամ դրա հաշվարկման*

*փգիփության պափճառի շփապողականութ-յամբ ու նրա ձեռքբերումը լինում է այլ բան, քան երևակայական առյուծն է, նա, անգամ անհասկանալի ծագման կենդանուց, կարո-ղանում է կերպարել ցանկալին: Իսկ որ բնության մեջ ցանկացած անասնափեսա-կին համապափասխան փղամարդ կա, բացի առյուծից, դա գիփեն հենց միայն փղամար-դիկ, ու եթե հանդիպում է փղամարդ, ով իրեն խորհրդանիշ է ընփրել առյուծը, ապա հոգու խորքում նա այլ բան չէ, քան քամոտ անձրևի փակ մնացած կափվի ձագ: Այսփեղ եթե փե-ղին է խոսել վախկոփությունից, որը «կրոնի» հեփ ձեռք ձեռքի է, ապա միայն փղամարդու, որը երբ գայլ չէ, համաձայնում ու անգամ ինքն էլ սկսում է հավափալ առյուծ լինելուն՝ լոկ այն բանի համար, որ հանկարծ չկոչվի էշ, ուղտ, կամ ցուլ, որից հեփո պետք է մնա եզ, ինչը, սակայն, ամենաշափը կպափվեր իր մշփական ձագ լինելը, որի դեպքում այլևս էական չէ, թե ինչ կենդանափեսակի է:*

*Միակ փղամարդը, որին կինն իսկապես կարող է սիրել ինքնին՝ արդեն սեռային պա-փերազմից դուրս, բայց որովհետև որպես փարած հաղթանակի գավաթ, սեփական որդին է, բայց հենց այսփեղ բարոյականութ-յունը մերժում է կիրքը, առանց որի սերն ավելի «կրոն է», քան «կրոնը»:*

*Այնուամենայնիվ, բնության և, բացառապես, բոլոր գաղափարախոսություններից խառնածին սուտ, բայց իրական, բարոյականության բախումից սերվում և դրա հետ ներդաշնակվում է Բարձրագույն Ես-ի ինքնարարման երրորդ-մեկ ճշմարտությունը՝ ըստ որի նա ինքն իր հայրն է, իսկ սերն ավելի մեծ խորություն, քան կարող է բացահայտել մարդ մնացած մարդը:*

*189.*

*Երբ իմ «չարակամությամբ» հարձակվում եմ մարդկային բոլոր հարաբերություններ(ում)ով մարմնավորված բարոյականության վրա և անկեղծորեն ձգտում դրա ոչնչացմանը՝ ընդհուպ մինչև անտեսանելի հիմք, որի լիցքը կապվում է մեծանուն սպախոսների հետ (բոլորի) որոնց կերպարը սոցիալական կապիկը վերածել է ձվի դեղնուցի, որով ամրացնում է «եկեղեցու» պատերը, որտեղ իր ոչնչությունն արժանանում է օրհնանքի, ինձ հակադրվում են սիրո հիերարխիկ այլանդակությամբ՝ բուրգին թագադրված ծնող-զավակ հարաբերությամբ, ինչը, սակայն, նրանց վերջին անգնդակ լիցքի ճայթյունն է:*

*Ո՞վ է անհապաղ ճանաչում ծնողին, ո՞վ՝ զավակին, նրանցից ու՞մ սերն է գենետիկական սովորութականությունից ավելին*

*(անթույլատրելի) ճանաչված, կամ, թեկուզ, ճանաչողությամբ արդարացված ավելի խոր, քան ծնունդից հետո (և նախորդած) դրսևորված փոխադարձ, բնազդային եսասիրությունն է՝ ամրացած համապետ կենցաղավարությամբ (որի առնչությամբ էլ, գոնե, թույլ և վախկոտ արարածի արժեհամակարգը չի կարողանում ունենալ բարձրացնող առերևույթ) երբ անգամ հանկարծակի բացահայտումը, որ արգանդային առնչություն չեն ունեցել, ոչինչ չի փոխում նրանց պարտավորական կապվածության մեջ՝ մեկ ավել անգամ «եկեղեցի» գնալու առիթ դառնալուց բացի:*

*Ու հենց այստեղ, երբևէ չպեսնված հանգստությամբ, ես կոչվում եմ ՄԵՐ:*

*190.*

*Իմ բարձր առողջությունը թույլ է տալիս հիվանդանալ մինչև ընդհուպ մահվան սահմանահատակ, որտեղից զատ չկա ինքնադիտման մաքրության, հետևաբար, բացարձակ ճշմարտություններ շոշափելու մահվանը նախորդող այլ առավելագույնն, ինչպես չկա առողջության այլը, քան, միայն, էութենական ինքնահաստատումը՝ իբրև առողջ: Հենց միայն իմ հիվանդացումը ցուցիչն է երևույթների անտեսանելի բովանդակությանը մոտենալու և փոխադրողը՝ դրանց անեզր*

*փիրույթում, որտեղից ապա դուրս եմ ճախրում առույգ, ինչպես արծիվը ինքնախարազանմամբ նորացած թևերով, մագիլներով և կտուցով:*

*Ինձ վանում է լավագույնների լպրծուն կենցաղավարությունը, որոնց ինքնախաբեությունը կարող է հասնել արևը սեփականացնելու կարգի, երբ տակավին իրենք իրենց չունեն, ու եթե իմ «հիվանդացման» ժամանակ հնարավոր լիներ պահել գեթ մեկ բան, որը չէր խանգարի այդ բարձր թռիչքին, ապա, անպայման, կընդունեի հենց լավագույնի հոգատարությունը՝ թույլ տալով ինքս ինձ խղճալ նրան:*

*Խավարին հակված իմ հոգին լույս ունի չճառագած՝ զի պատկանում է ծագման, որպիսին մինչ ինձ երբևէ չի եղել:*

*191.*

*Ես ձեզ համար անընկալելի եմ, ձեր մեջ ես ոչնչություն եմ, բայց անգամ այստեղ դուք նրբազգաց չեք այնքան, որ ինձ բացահայտեք՝ իբրև ձեր ներսի՝ բարոյականությամբ դեռևս չփչացած գիշատչի պատվանդան, որտեղ, ձեզ բնորոշ մեռելապաշտությամբ, ծաղկի նման պետք է խոնարհեք հայտնի բոլոր «մեծերին», որոնց ընդհանուր ճանաչելիությունը միայն յուրաքանչյուրիդ ողբաքաղչանքին համահունչ «հոգոց» ունենալն է:*

*Նրբազգաց չեք, որովհետև բնազդի վերաճած բարոյականությամբ փնտրում եք միայն վտանգը, որ գիշատիչը այս պատվանդանին չի լռելու խեղճության առաջ, որ դուք ձեզ հպարտ զգաք: Դուք սարսափում եք ձեր բնականության հետ մենակ մնալուց, որովհետև ձեր փգիտությամբ անմահացած «մեծերը» ու ձեր (նախիրի) նեխած արգանդից ծնվող նոր ճտերը ձեզ պահում են ամուլ, դուք չգիտեք ինչպես ապրել՝ չլինելով մեռել ու մեռելածին:*

*Այստեղ էլ, ինչպես միշտ, իմ ձգտման մեջ չկա չարության որևէ տեսակ, կամ դրսևորում, որովհետև (եթե ...) անգամ դրա համար դուք բավականաչափ ողջ չեք ու բավականաչափ վտանգավոր չեք, որ բաց կրծքով չհայտնվեմ ձեր մեջ՝ միայն իբրև թմրեցում լրջությունից, որն ապրում եմ ձեր պարանոցի ճկունությանը անհասանելի բարձունքում:*

*Բայց անգամ այս արհամարհանքից հետո, ձեր մեջ մնալու են ինձ գաղտնի ընթերցողներ, քանզի անկարելի է բացահայտել եզրագիծը, որտեղից սկսվում է մերժումն ամենայն մոլորության ու ինքնարարումն իսկականության, որին, այնուամենայնիվ, կա դեռ ձգտող չմեռած ոգի, իսկ թե պատահեն այնպիսիք, ովքեր կփորձեն ինձ մեկնաբանել, կամ առնչվել անվանս՝ իբրև ինձ հաս-*

*կացած, ճանաչեք նրանց մեջ ձեզնից սովորակարգ կեղծարարներին, ովքեր փորձում են պատկերել թռիչք, որին երբեք հասու չեն լինելու (նրանք անպայման կաղ ու կոնատ են):*

*Իհարկե՛, ձեր ներսում լցվող չարությունը թույլ չի տալու միանգամից հասկանալ, թե որտեղից այսչափ ամբողջական գիտեմ ձեզ, է՛լ ավելի դժվար է հասկացվելու, որ նաև ձեր կարիքն է ինքնարարումս, որ լինելով ձեզանից մեկը՝ դադարեմ լինել դուք՝ որ դուք էլ դադարեք …:*

*Երբևէ ձեզ ցեղակից լինելս կարող եք հասկանալ բոլոր այն մտքերում, որոնք ձեզ կթվան հասկանալի զգայարաններից ցանկացած մեկով, ու որոնք, հենց այս այլանդակությամբ, բոլորիդ հետ հավաքականորեն և անհատապես, որպես բարձրագույնին անվայել ցածրություն, ես մերժում եմ. դրանք այլևս իմը չեն՝ իբրև իրողություն, դրանք, ընդամենը, հեռացումս չափելու նշակետեր են:*

*Ես ձեզ համար աննկատելի եմ, ձեր մեջ ես ոչնչություն եմ, որովհետև դեռ բավականաչափ ողջ եմ …*

*192.*

*Իմ հայրը մահացել է երկու անգամ. առաջինը, երբ ես ծնվել եմ, որ լինեմ ինքնարար: Երկրորդ մահն ինձ զրկել է բարության*

*աղբյուրից՝ որպիսին եղել է մահից մահ՝ գոյությամբ հոգի:*

*Մորս երկրորդ մահով մոռանալու եմ, որ երբևէ եղել եմ մարդածին:*

*193.*

*Հետևորդներին գրավում է նպատակը, իսկ ես խեղճ եմ համարում բոլոր հեղինակություններին (ցանկացածին, ում կմտաբերի միտքը՝ սա կարդալուց) ովքեր ունեցել են դատողություններ նպատակի մասին, առավել նրանց, ովքեր չեն գործել օգտագործելու բնական ստորությամբ, ինչում, գոնե, կա իրատեսություն ինքն իր հետ, այլ իրենք էլ հավատացել են իրենց սահմանած նպատակներին, որոնք, անկախ «միֆական» բարձրությունից, չափազանց ցածր են ինքնարարի արժանապատվության համար: Ու ինքս ինձ էլ եմ մերժում, ավելին՝ մինչև ոչնչացում նվաստացնում եմ ինքս ինձ այնտեղ, որտեղ, հանկարծ, Բարձրագույն Ես-ը կարող է երևալ աննպատակայնությունից ներքև՝ ներգրավելով գեթ մեկ հետևորդ:*

*Սրանում ես մեկ հեղինակությունն եմ՝ անպայմանական ...*

*194.*

*Մտքի, խղճի և դավանանքի ազատությունը՝ որպես սահմանում, բնավ սոցիալական զարգացվածության աստիճան չէ. պար-*

*զապես մարդն ավելի հիմար է, երբ դա իրավունք է, քան՝ հարկադրանք:*

*195.*

*Իմ ճառագած լույսը փեսնելու համար. ոչ միայն պետք է ավելի երկար նայել, քան միանգամիցն է և ավելի խորը, քան ուշադիրն է, այլ՝ դա անել ընթացիկ շարժման մեջ:*

*196.*

*(Անգամ) ոչ միայն ցանկացած ողբերգություն և փառապանք կարողանալ ապրել զվարթ, այլ զվարթության համար ստեղծել և/կամ փնտրել դրանք. ահա բացարձակն ու հասփատունը տեսնելու այն (ինքնա)ճանաչողությունը, որը դուրս է փանում դիալեկտիկական ճոճքից:*

*197.*

*Տղամարդկային բոլոր դատողություններում, որոնք ուղղված են կնոջն ու կանացին նվաճելուն, տղամարդը բացահայտվում է իբրև խեղճություն: Դրա համար, հատկապես հենց պոեզիայում, նա ոչ միայն անգերազանցելի փաղանդավոր է, այլ, նաև, ներսեռային մրցակցությամբ՝ սիրո և ողբի նկարագրման, ապրելու մեջ (որոնք նշված նպատակում նույնական են՝ որպես խեղճություն)*

*նորանոր «բարձունքներ» բացահայտող: Բայց ինչու՞ հենց պոեզիայում ամենաշատն են կանացի ականջները, երբ գեղեցիկը երբեք նրա էության նկարագրություն չէ, կամ այլ բան չէ, քան կիսատությունն ու կիսատումը, որովհետև կինը, անկախ գիտակցությամբ «կրոնական» լինելուց, բնազդով գիտի, որ անիմաստ է ինքնաբացահայտվել՝ իբրև այլանդակություն, երբ հազվադեպ է պատահում հրեշը, ում հետ կարող է ինքնարարվել հրեշպատ: Ուստի, խեղճություն փիրելով՝ կինը երբեք չի դադարում սպասել հրեշին, որին կարող է տրվել, հենց միայն սպասելուն զբաղվածություն տալու համար էլ փիրում է խեղճությունը, որտեղ տղամարդիկ պաղանդավորությամբ սոխակ լինելուց բացի, նաև եզ են՝ աշխատունակությամբ, իսկ կանայք, ում այլանդակման մեջ բնությունը շռայլ է գտնվել և չի տվել միայն ականջներ, իրենք են ծնում իրենց ինքնարարման հրեշին:*

*Այն, որ պոեզիայում տղամարդու նպատակը կինն է ու կանացին, անգամ երևույթների մասին դատողություններում, որտեղ կինը բնությամբ է մերժված, պատասխանում է հարցերին՝*

- *իսկ տղամարդու պոեզիան ունենու՞մ է արդյոք այլ նպատակ ...,*
- *և կա՞ արդյոք նույն նպատակին միտված տղամարդկային այլ բան, որը չի համարվում «պոեզիա» ...*

*198.*

*Ճշմարտության մասին դատողություններ անողների մոտ ամենահաճախ հանդիպող մոլորությունը, որով նրանք հավասարապես համարվում են ձախողված, այն է, երբ ճշմարտությունը համարում են ստի վերացման սուր, որը հպարտությամբ ճոճում են՝ զգալով իրենց «առաքյալ», որտեղ, արդեն, բացահայտվում է ոչ թե ճանաչելու, այլ՝ իրենց կամայականությամբ ճշմարտություններ սահմանելու և դրանում թագավորելու նրանց դիտավորությունը, որով նրանք ոչ միայն կորցնում են մոլորյալի ախտորոշմամբ արդարացվելու հնարավորությունը և արժանանում նվաստացման «ազատ մտքի» կողմից, այլ՝ «քնած» հավատացյալների մոտ առաջացնում են ճշմարտության և իրականության հակադրություն, որից փրկելու միակ միջոցը մնում է նրանց կասկածի անդունդ նետելը:*

*Անկախ նրանից, թե ինչքան բարդ են կառուցում իրենց մտադրության լաբիրինթը, այն հօդս է ցնդում պարզ իրողությամբ, որ սուտն այլ բան չէ, քան իրականության, հետևաբար ճշմարտության արտահայտման ձև (ինչպես հակոտնյան, բայց ոչ հակադիրը) առավել ևս, եթե հաշվի առնենք հաստատունը, որ բովանդակությունը երբեք չի արտահայտվում առանց ձևի, ինչից հենց ճշմար-*

*պության գոյությունն է առհասարակ դառնում կասկածելի (ինչն, այս դեպքում, իհարկե միայն հեզնանք էր՝ ուղղված ձախողվածներին):*

*Ճշմարտությունը երբեք չունի ստի դեմ պայքար, ինչպես արյունն անոթի, բացի այդ, «ազատ միտքն» ունի հարցադրում, թե ինչքանո՞վ առանց ստի աշխարհը նպաստավոր կլինի մարդու ապրելու համար: Այլից զատ, և շրջանցելով դատողությունների շարքը, հստակ է, որ բովանդակությունը ձևի դեմ կատեգորիկ օգտագործելը երբեք չի կարող համարվել առողջ բանականություն, կամ բանականություն առհասարակ:*

*Ու կանխելու համար հնարավոր մոլորեցումն ինձանից, պետք է իմանալ, որ, այնուամենայնիվ, կա ճշմարտության ձևազրկման ճանաչողություն, որը, սակայն, ոչ թե ապրելու, այլ՝ մահվան ընտրություն է, բայց սա արդեն այլ թռիչքի (ինքնա)ճանաչողություն է …*

*199.*

***անպարկանելիություն սահմանմանը.***

*Ոչ գրող, ում կոնցեպցիան սահմանափակված է իր մարմնական գոյության ժամանակահատվածով, կամ, թեկուզ, դար(եր)ի, բայց միշտ անցյալամույն, ով մահից հետո շարունակում է հնչել լոկ այն բանի շնորհիվ,*

*որ մարդկանց հուզական էությունն ու գրականության միջակությունն է մնում անփոփոխ: Ու ոչ էլ փիլիսոփա, ինչն ավելի հաճախ է հնչում իմ հասցեին (հետո էլ անպայման հնչելու է) որովհետև իմ «կոնցեպցիան» զերծ է ակզբունքայնանալուց, հետևաբար, անխուսափելի ճահճացումից՝ թեկուզ իբրև օվկիանոս:*

*Այնուամենայնիվ, սահմանման բացակայության պայմաններում (ինչը սկզբունքների ծնունդը վիժեցնելու իմ դիրավորությունն է) ես վերապահումով ընդունում եմ փիլիսոփայի կոչումը, նաև որովհետև նրանում վիրավորանք կա, որով միջակությունը վրեժխնդիր է լինում այն հնչեցնելով: Իսկ վերապահումը նրանում է, որ «փիլիսոփա»՝ միայն որպես ապագա «փիլիսոփաների» ծագման ակունք (կամ ակունքին փանող ակնարկ) որտեղից ծնվող «նորերը» չեն կոչվելու ուրիշ բան, քան միայն ինքնարարներ ..., ու եթե այստեղ ինձ կարող եմ թույլ տալ ազգայնականություն, ապա բացառապես ցանկության մեջ, որ ինքնարարներում շատ լինեն ցեղակիցներս, քանզի, այլից բացի, ինձ ընկալելու լեզվական ամենամեծ հնարավորությունը հենց նրանցն է:*

*200.*

***«Ի սեր Ասլծո».***

*Ասլծով արված միջնորդությունը կապված է Ասլծո հանդեպ:*

*Այդ դեպքում ինչպե՞ս լուրջ վերաբերել նրան, ում վկայակոչած միջնորդը կասկածվել է իր իսկ կողմից, հատկապես, երբ նրա համար դա ամենայնի արարիչն է, ինչով հենց՝ վերջինս զրկված է իր նկատմամբ միջնորդ ունենալուց, իսկ հակադարձումը, թե նա միակ հանգամանքն է, ում հնարավոր է (պետք է) վերաբերել ինքնին, ավելին չի լինի, քան սոփեստություն՝ թեկուզ միայն նրա համար, որ փոքր բանին միջնորդողը չի կարող հարաբերվել մեծին՝ առանց դրա: Այստեղ կարող էր օգնության հասնել գործարքի մասին անկեղծացումը, բայց, իհարկե, դա հօդս կպայթացներ բարոյականի կերպարը, երբ պարզվեր, որ արարի դիմաց վճարել է արարիչով (ինչը, բայց, ես կարող եմ):*

*Ու, առհասարակ, եթե վերանանք Ասլծո գոյությունը դիտարկելուց (ինչին բնավ միտված չէր այս դատողությունը) և դիտման կենտրոնում պահենք միջնորդությունը, ապա երբ խնդիր դրվի հիմնավորել ներկայացված հիմնավորումը (ինչն անպայման պետք է դրվի), ապա վերջնարդյունքում ստացվում է ամրության հավաստում շղթայի, որի օղակները միակցված չեն …*

*201.*

*«Արդյոք ամոթ է զգում սիրունկը, ով որդու հետ անցնում է կառույցի կողքով (հատկապես, երբ այն վեհաշուք է) որի շինարարության մեջ ինքը բանել է, փաստահաբար՝ ոչ, իսկ երբ որդու մոտ տեսնում է վեհության նկատմամբ հիացմունք (կամ կարծում է, որ տեսնում է, կամ ուզում ու տեսնում է) նա, անպայման, հպարտությունից փայլատակող աչքերով նշում է, որ «ներդրում» ունի դրանում՝ հնչեցրած բողոքն էլ ներկայացնելով իբրև դրական գործակից:» Ահա, թե ինչ եմ տեսնում նախորդող բոլոր սերունդների պատմող հայացքներում՝ իմաստնությունների մասին (մարդկային և վերմարդկային) որոնցից շատերը վեհ են՝ միայն, որովհետև (պատմողն ու լսողը) իրենք են չնչին:*

*Սերունդները փոփոխվելու են, այդ հայացքը՝ (դեռ) ոչ, ու ես խլացնում եմ ինձ:*

*Բայց սա նաև այն մասին է (և որովհետև ոչ մի բարոյականություն չի կարող փոխել բնականն ու տիեզերականը) թե ինչպիսի «անմարդկայնություն» պետք է տեսնել (ընդունել) այնտեղ, որտեղ կա արարչություն՝ թեկուզ, երբ արարը մարդկայնությունն է, կամ՝ որտեղ փնտրել արարչություն:*

*202.*

***Այլից, որոնցից***

*- մեկն այլ բան չէ, քան մարմնի պահանջմունքի նվազեցում, ապա գիտակցության պահանջմունքի ներդաշնակում մարմնականին, ըստ որի, սակայն, անհասկանալի է, թե ինչու՞ հաշմանդամությունը չի որակվում առաքինություն և առաքելություն, ուսմունքում Բարձրյալը՝ հաշմանդամ (կամ գուցե այդպես էլ կա՞):*

*- մյուս(ներ)ն, իր պարապեսակներով, հավերժական ծուլության խուսման դիմաց՝ սփրկության խրախուսում, ինչի համար բավական է գիտակցությունից թողնել միայն շարք կանգնելու ունակությունը, որտեղ էլ, ամենայն հավանականությամբ, Բարձրյալը պետք է, որ կապիկը լինի:*

*- կամ հերոսանալու անիմաստությունը, երբ առաջարկվող խուսումը համանման հիմարների հավերժական ընկերակցությունն է:*

*- անմասն չեն մնում անդինյան գոյությունը հերքող և նպատակը բացառապես աշխարհիկում սահմանողները, որտեղ խրախուսվում է գիտակցության պահանջմունքի մեծացումը, ապա կենդանականի ներդաշնակումը դրան, բայց անգամ դրանք անմասն չեն «կրոնականությունից», ինչն այս դեպքում ժառանգվող հիշողությունն է, «սուրբ*

*գիրքը» պատմությունը, որին հասու է առավելապես շաղապատանների գրիչը (հենց միայն իրենցը):*

*- ..................................................................................................................................................................:,*

*ինքնարարությունը տարբերվում է հանգամանքի անկախությամբ: Դրանց հարաբերվելով (ներառյալ բոլոր ուսմունքներին) այն չի սահմանափակվում իրենից դուրս (նաև ներքին) ԱՌԿԱ հանգամանքներով, այլ հենց ինքն է սկսում սահմանել ՀԱՆԳԱՄԱՆՔ, ու, այլի տարբերությամբ, բացում է նաև արահետներ, որոնցում միայն հետո պետք է հայտնվի, երբեմն այնքան հեռու, որ դրանց հասնելու համար ստեղծում է իրեն երկայնորդ, ինչում արտահայտվում է երբևէ հնարավոր, միակ բարձրացնող, խեղճությունից դուրս, մաքրամաքուր ինքնազոհությունը:*

*Այն չի հավակնում երբևէ վերածվել ուսմունքի (այդպիսի հավակնությունն ինքնին դեմ է էությանը) ու ոչ թե խուսափում, այլ՝ առհասարակ չի անդրադառնում նպատակ սահմանող և դրանով իսկ անիմաստության հանգեցնող հարցին՝ «ինչի՞ համար»: Բացի այն, որ մարդու միտքը միշտ ճանաչողական շեղ ուղղությամբ է ընթացել, երբ այն տեսել է միայն հարցերի առաջադրման մեջ ու չի տեսել հակառակում, նաև դեռ ոչ մի իմաստ-*

*նություն իրականում չի հասել պատճառի և հետևանքի հարաբերակցության լրիվ ըմբռնմանը, ինչի համար էլ միտքը ստիպված է ետ գնալ այնքան հուսահատ, ինչքան առաջ է գնում անսպատակ:*

*Վերջապես, պատճառն ու հետևանքը նույն արգանդի ծնունդ են, որտեղ ակնթարթների հաջորդականությունն էլ միանշանակ չէ, որ ստեղծում է դրանց «պատճառ-հետևանք-նպատակ» համակարգ, քանզի, ինչպես առաջինը կարող է ծնվել, որ ծնվի երկրորդը, այնպես էլ երկրորդը կարող է հապաղել, որ ծնվի առաջինը, ինչպիսի մոլորեցումից էլ զերծ է ԻՆՔՆԱՐԱՐՈՒԹՅՈՒՆԸ (իմ անվանակոչմամբ՝ Բարձրագույն ԵՍ-ը), որն իր ձևակերպման մեջ անգամ, հերքում է նպատակը՝ բացահայտելով դրա ճշմարիտ էությունը:*

*«Գնալու միակ պատճառը (հնարավորությունը) գնալու տեղ ունենալը չէ, բավական է նաև այն, երբ ցանկությունդ առկա տեղից գնալն է միայն (այդպես չէ՞)»:*

*203.*

*«Դեռ, թե՛ արդեն». – ժամանակի հետ հարաբերվելու մասին:*

*204.*

***Մարդը՝ սոցիալական էակ.***

*Որպեսզի կապիկը կորցնի իր զվարթությունը, դրսևորի փրամաբանական վարքագիծ ու լինի (կոչվի) հասարակություն, պետք է նրան պահել շարունակաբար սեղմվող վանդակում, ու պետք է ժամանակ առ ժամանակ նրան փալ լիիրավ, բայց կարճափև ազափություն (անգամ արփոնություն), որպեսզի նա շարունակի մնալ կապիկ:*

*205.*

*Իսկական փիլիսոփային առանձնացնում եմ՝ նրա մեջ փեսնելով երեխայի, ում ճանաչողական հեփաքրքրասիրությունը, եթե ունենա նման հնարավորություն, ունակ է պայթացնել աշխարհը՝ առանց չարության նշույլի դեմքին:*

*Այս ունակությամբ՝ ինքս միշփ փիլիսոփա եմ:*

*206.*

*Ոչինչ նպափակ չէ, կամ՝ նպափակը «ոչինչն է»:*

*Ամենը, ինչ շրջապափում է մեզ (այդ թվում երևակայորեն, ներառյալ ցանկություն և երազանք) միայն միջոցներ են, ու այդ առնչությամբ ինքնաճանաչողության մեջ էլ փոխվում է միայն այն, որ վերջինս, հըն-*

*թացու, վերաճում է միաժամանակյա ինքնա-
բարիման:*

*207.*

*Եզակի անգամ անդրադառնալով Բարձ-րագույն Ես-ի ինքնարարմանը (կամ ինքնա-բարիմանն առանց իմ անվանակոչման)՝ «ոչինչ նպատակ չէ, կամ՝ նպատակը ոչինչն է» կոնցեպտում, բավարար է նշել հենց միայն այն, որ «ինչի՞ համար» ինքնահարցադրումը որևէ մեկի ծնվելուն չի նախորդել (հաջորդե-լուց էլ անպատասխան է մնացել, եթե բութ հավատով չի գոհացել): Ինքնարարման պա-րագայում փոխվում է միայն այն, որ ինքնա-րարը «ինչի՞ համար»-ը իր առնչությամբ բա-ցառում է նաև ուրիշ(ներ)ի կողմից, որտեղ նա (այլից զատ) առնվազն իր ինքնանպա-տակայնությամբ բարձր է (ազատ է) ուրիշի նպատակայնություն լինելուց:*

*Նույն այս տրամաբանության մեջ են գտնվում նաև ինքնարարման մեջ «ուզում եմ», կամ «արարվել ինչ» և ածանցյալ այլ հարցերի պատասխանները (այդ հարցադ-րումները մարդ մնալու նկրտումներից ավե-լին չեն, երբ այստեղ նկրտումը հենց մարդու հաղթահարումն է):*

*208.*

*Քանի որ իմ մենակությունը վայրի կենդանու (կուզեք՝ հենց անասունի) և աստվածային էությունների միաձուլում է (ինչպես կնկատեր Նիցշեն) ես հրաշալի եմ պեսնում ձեր միջի ամենամեծ (իրական) պականքին: Դա նա է, ով մենակության մեջ էլ շարունակում է խորհել (լինել) քաղաքական, սոցիալական, ..., կարճ՝ մարդավայել:*

*Ու, առհասարակ, ձեր միջի պականքն ավելի շատ է, քան թվում է, և այլ՝ քան գիտեք:*

*209.*

*Մինչ դու մտածում ես, թե ինչպես ազատվել սարսափից, որը քեզ ներշնչում են մեղքերիդ ուրվականները, նրանք նոր միջոցներ են փնտրում՝ ինչպես հասկանալի հայտնել մոլորված գլխիդ ու վախվորած սրտիդ, թե որտեղ են զրպարտել քեզ:*

*Բայց նա, ով սրանում արդարացում տեսավ, դրանով միայն ընդունեց զրպարտվելու իր արժանիքը ու ոչնչով չտարբերվեց ներվածի խեղճությունից, անմեղի տգիտությունից և մեղքի արտոնյալ լկտիությունից, որոնք նույն այգու տարբեր պտուղներ են:*

*Այն, ինչ հայտնում են ուրվականները, այլ բան չէ, քան մարդուց վեր բարձրանալու ուղղու հուշում:*

*210.*

*«Ով ականջ ունի՝ կլսի, ով աչք ունի՝ կփեսնի». ու բոլորի ականջները մնացին սուր, աչքերը՝ բաց, և ոչ ոք չլսեց, չփեսավ ինքն իրեն (կամ ամենքն իր ականջի և աչքի ուղղությամբ լսեց ու փեսավ, ինչ ուզեց)։ Ընդհանուր եղավ միայն դժգոհությունը՝ «Այս ինչ զարշահոփ է», որովհեփև, այդուհանդերձ, յուրաքանչյուրը նաև քիթ ուներ, իսկ սպասումը՝ զարշելի հոփ։ Ու, քանի որ հարմարվողականությանը առավել ոչինչ չի նպասփում, քան այն, ինչն ընդհանուր է, բոլորը միավորվեցին ամբոխում (սոցիալական նախիր) որփեղ ցեղակցությունը որոշվում է բոլորին ծանոթ հոփով, ներցեղային մրցակցությունը՝ ականջի, աչքի, քթի չափերով։*

*Իսկ նա, ով հասկացավ խաբկանքը, որ ականջն ու աչքը նաև կարելի է (պեփք է) փակել, հոփին չհարմարվեց, հոփով չներծծվեց. ցեղին (դարձավ) մնաց (ինձ հարազափ) օփար …*

*211.*

*Խելամփությունը կարող է (թերևս պեփք է) ինձ համարել անբարոյական, դե, օրինակ՝ ինչպես հիվանդն իր բժշկին՝ անմարդկային, երբ վերջինս բուժման համար նշանակել է սննդակարգ, որը նրա ախորժակին հաճելի չէ։ Բայց ինձ համարել բարոյականությունը*

*ժխտող, նշանակում է՝ միտքը հեռու է խորաթափանցությունից (այլ կերպ՝ սպասողական է) և համարողին մնում է մաղթել երջանկություն:*

212.

*Եթե բարոյականությունը հնարավորություն ունենար զբաղվել իրեն կրող մարմնի բուժմամբ, նա անպայման կազատվեր մարմնի բորբոքված կույրաղիք կրոնից (բոլոր ճյուղերով՝ ներառյալ աթեիզմը) հեռացման վիրահատությամբ կանցներ քաղցկեղային ուռուցքների՝ կառավարման բոլոր օղակների վրայով, ..., վերջապես, մարմնից այլ բան չէր թողնի, քան մարսողական և բազմացման համակարգերը, ու մինչ դրանցից մարմնի՝ անճոռնի վերաճումն իբրև նույնություն, կապրեր հանգիստը վայրի ներդաշնակությամբ մարմնում:*

*Բայց բարոյականությունը հենց իրեն կրող մարմինն է ու այն հիվանդ է (հիվանդ էլ ծնվել է) և ինքնաբուժման արդեն ունակ չէ ...*

213.

*Տկարներին և հիվանդներին ուղղված նրա ձգտման (նրանց օգտագործելու) մեջ վերմարդկային անխղճություն կա (որն, այո, սիրո պարագայում առաքինի հակոտնյան է ու հենց սեր է, բայց երբ սերն ինքնարարումն*

*է) քանզի նա ձգտել է առնչվել մեծ ճշմարտությունների բացահայտմանը մոտ գտնվող հանգամանքներին, որտեղ գտնվողները բավարար արթուն չեն եղել, որ տեսնեն, ու եղել են տկար և հիվանդ, միայն, որովհետև չեն իմացել կամքի և առողջության այն մեծը, որն իրեն թույլ է տալիս տկարանալ և հիվանդանալ: Նրանց օրհնությունը միայն նրանում է, որ օգտագործվել են բարձր նպատակի համար (ու բնավ չեն փրկվել):*

*214.*

*Թերարժեքությունը կարող է արժեք ստեղծել իրեն հակադիր բևեռով՝ նույն նպատակում: Վստահաբար, սրա գիտակցությունն ավելի լավ կբացատրեն գիտնականները, ովքեր (գիտնականներն առհասարակ), թերևս, լավագույն (բայց, մեծամասամբ, իրենց սառած ԿՐՔՈՎ վանող տեսակով) պարզ տեսանելի օրինակն են, երբ մարդկանց ներքին շարժիչների գործարկումը (դրանց հզորացումը) պայմանավորում են հենց նրանց թերարժեքության բարդույթները որևէ հարթությունում, որոնց ընդհանուրն այն է, որ բոլորը սոցիալական բովանդակության մեջ են: Այնտեղ, որտեղ կա բարձրացում, կա ամոթ, ինչպես հերոսության մեջ վախն է, որին հարաբերվելուց ստացվող արդյունքը պայմանավորված է նրանով՝*

*զգացողը վրա՛ է, թե՛ դուրս, անցնում է միջո՛վ, թե՛ շրջանցում ամեն (փչացնող) քայլով:*

*Ինքնարարը, ով գիտակցության թերություններից լավագույնն է դասեր քաղում, սպառելով միջավայրի տվածը, ինքն է սկսում հայտնվել այնտեղ, որտեղ պետք է լինի ԱՄՈԹ՝ մեծ ավելի ու էլ, ինչում նրա մարդուկը, որպես պետքության եզակի դեպքերից մեկը, օգտագործվում է իբրև սոցիալական կողմնորոշող (որսորդական) շուն:*

*215.*

*Բառ, որի պարզությունը փոխվում է՝ ըստ արտահայտման միջավայրի, բառում չեշտադրվող տառի, ... վերջապես, ըստ արտահայտման նպատակի և ընկալման հետևանքի, որոնց առերևույթ համապատասխանությունը կարող է վերանալ էլի պարզ հարցերով, օրինակ՝ «Ինչու՞ ասվեց բարև», «Ինչու՞ բարևն այդպես ընկալվեց» ..., ու միայն նրա համար, որ հարցերը հնչեցին, բարևն այլևս ՊԱՐԶ ԲԱՆ ՉԷ, ինչպես մտքի հանճարեղությունն է սահմանվում:*

*Ուրեմն, ի՞նչ է իրականում նկատի ունենում «մտքի պարզության» հանճարեղ գնահատումը, եթե ոչ, միայն, դրա նկատմամբ ականջների առատություն, և, իսկ ինչպե՞ս կարող է հանճարեղ լինել այն, ինչը հասու է շատերին, երբ «շատ»-ը «բոլոր»-ի մեծ*

*մասն է, «բոլոր»-ը՝ համճարեղության ուղիղ հակադրությունը:*

*Հասկանալի պատճառներով՝ չի կարելի թույլ տալ հիմարություն և վիճել հավափի հետ, հետևաբար կարելի է ընդունել, որ մտքի պարզությունը աստվածներին հասու համճարեղություն է, բայց քանի որ մեզ՝ ինք-նարարներիս համար, ի տարբերություն նրանց, ինքնին է հակացուցված ամբոխա-վարությունը, հետևաբար մտքի համճարե-ղություն տեսնում և արտահայտում ենք դրա ԲԱՐԴՈՒԹՅԱՆ մեջ, ինչը, անշուշտ, չենք շփոթում մտքի բարդեցման հետ, քանզի մտքի բարդությունն այլ բան չէ, քան դրա պարզությունը (ՄՏՔԻ, ոչ ուրիշի ընկալման) կատարելության հասցնելու ձգտում:*

*216.*

*Որտեղ (երբ) շտապում ես, այնտեղ մահն է հետապնդում, որտեղ դանդաղում ես՝ կյանքն է առաջ անցնում, ու սա ճշգրիտ որո-շիչն է՝ արդյոք արժե ԱՅՆ-ը գնին, որ մահը կարող է բռնացնել, իսկ կյանքը՝ գնալ անհա-սանելի:*

*Ով երբեք չի ունեցել նման գնին արժանի ԱՅՆ(եր)-ը, չի ապրել ոչինչ, այդպիսինի լի-նելը բաղկացած է լոկ շտապողականություն-ներից և հապաղումներից, քանզի ժամանա-կին ներդաշնակում երբեք չկա, բայց կա ներ-*

*դաշնակությունը՝ նրանից դուրս, որտեղ համգամանքը ոչ էլ ժամանակն է (ինքն իրենով պարզապես չկա) այլ հենց միայն շարժման ԻՄԱՍՏԸ:*

*217.*

*Ընկալելով այլ կերպ, քան, որ կարող են լինել (ինքնա)ճանաչողությանը նպաստող դիմադրություն, կրթարանները կան միայն համակարգի՝ միմյանց փափակեցնող մուրճի մաս, ու նրանում հայտնված (հնչող) անունները, որպես «մեծ դասափիարակներ», չունեն արդարացում միջակության ստեղծման ոճիրում, եթե անգամ իրենց կամքով չեն հայտնվել հանցակիցների շարքում, որովհետև, առնվազն, չեն ունեցել (դրսևորել) համակարգի կողմից անօգտագործելի, միջակին՝ անհասկանալի բարձրություն, բացի այդ, անուններից շատերը «մեծացել են»՝ շնորհիվ մուրճի միրճած՝ միջակության արգանդի:*

*Բացառություն են եզակիները, ում անունները հենց նրանց փչացնելու դիտավորությամբ է համակարգը ներառում իր մուրճում: Նրանք չեն հայտնվել նախանձելի վիճակում, բայց չեմ ափսոսում, երբ, այդուհանդերձ, ունեն «սերունդ փչացնելու» առաքելության փոքր, բայց, էլի հնարավորություն:*

## *218.*

*Եթե ապրելն առանձնահատուկ հեշտ չի տրվում, որովհետև ֆիզիկապես ունակ չես, անհոգ եղիր՝ առջևում մահ կա,*

*Եթե առանձնահատուկ հեշտ չի տրվում, որովհետև ընկճված ես, անհոգ եղիր՝ առջևում մահ կա, .......................................*

*..................................................................*

*.................................................................*

*Եթե ապրելը հեշտ չի տրվում ու հանգամանքն ընդհանուր է, անհոգ եղիր՝ առջևում մահ կա:*

*Եթե ... ու հանգամանքը չկա, ցնծա՝ ինքնարարի «ախտանիշ» ունես ու ապրելուդ այլը չկա:*

## *219.*

*Կա «ճշմարտություն», որով ամենաշատն են էշի քուռակին նախապատրաստում «մեծ» կյանքին, թե իբր «ամեն ինչ տրվում է դժվար, կամ թե դժվարությամբ տրվածը հատուկ իմաստ ունի, ընդհուպ, որ ամեն ինչ պետք է տրվի միայն ու միայն դժվարությամբ», այդ կերպ հեշտին տալով պղծվածության հատկանիշ:*

*Այն, ինչն իրականում ինձ պետք է եղել (իսկ որ ունեցածս հասարակ ցանկալին չէ, բավական է, որ դրա համար անթիվ են արյամբ քրտնողները) երբեք դժվարությամբ չի*

*փրկել, բայց, որովհետև, երկար ճանապարհին անպայման նշանակում է, որ կա նաև կարճը (ինքնին ու ինքնաբուխը, «պատահականը») ու ինչը որ վտանգավոր է, անպայման դժվարը չէ, դժվարության մեջ, վերջի վերջո, կա ձեռքբերումն էժանացնող բան, ձեռքբերողին՝ ցածրացնող, ու հաղթահարած դժվարություններով ինքնարժեքը մեծացնելու համընդհանուր սովորությունն ավելին չէ, քան շուկայական հնարք, շուկայի ճշմարտություն:*

…

*Մտրակով մարզված սովորությունը երբեք չի կարող համարվել բարձրի հատկանիշ:*

…

*Երկար քայլող մարդու մեջ նրան չորքոտանուց տարբերող քիչ բան է մնում:*

## *220.*

*Անսեր կրքում ավելի շատ մաքրություն կա, քան՝ հակառակում, թեկուզ, երբ սեր է արբաղասված, որի (դասի) ընդհանուր հատկանիշներում «պատահականորեն» միշտ ներկա է անկենդանությունը: Ի վերջո, սուրբ է համարվել այն, որտեղ ամենաշատն է եղել խոզություն:*

*Առանց բովանդակության լրիվության էլ, միայն հանգամանքով, որ անգամ համա-*

*կարգն է կրքի դեմ միշտ պես պայքարում (արգելքով ու այլասերմամբ) սուրը ճոճելով «սեր» հիմնավորումով, ամբողջի դեմ՝ մասով մյուսին հակառակ պայքարի պայմաններում հակված եմ նրան, որում կա կենդանություն (թեկուզ, կոչումով կենդանականություն):*

*221.*

*Որ բնությունը դեռ զարմացնում է (նաև մարդուն ինքն իր մեջ, գիտակցությանն՝ ինքն իր դեմ) ուղիղ վկայությունն է մինչ այս եղած ճանաչողության սահմանափակվածության՝ ներառյալ երևակայությամբ, որպիսի պայմաններում էության երկարում է ստացել իմաստասիրությունը (բոլոր փեսությունները) որը, չգիտես ինչու, ամենի սկզբում և վերջում փնտրում է ավելի մեծ մի բան, քան կա կենտրոնում (որում է, առնվազն, ժամանակին ներկայով հարաբերվելով) ու հետո ընկճված կառչում է որևէ վարկած(ներ)ից՝ իբրև հավատ, ապա հույսը հոչակում մարգարեություն, ինչից բանականությունը շարունակում է մնալ հուսահատության պարանոյիկ շրջանի մեջ:*

*Որ կամուրջը կետից կետ անցման է նախատեսված, չափազանց տրամաբանական է (հասու կենդանական բնազդին) վերմարդկային ճշմարտության ուղի լինելու համար,*

*վերջապես, թե ինչպես եմ ծնվել և ինչպես եմ մեռնում (շնչել եմ հողում և արտաշնչելու եմ դրախտում կամ դժոխքում) իմացությունը ոչինչ չի փոխում նրանում, թե «ո՞վ եմ» այսօր …:*

*Ոչինչ (առնվազն) չի բացառում իմաստը, որ կամուրջը ոչ թե անցման, այլ՝ թռիչքի ուղի է, ցանկացած հաջորդ քայլը հենակետի վերածելու հնարավորությամբ, որից սպացված եռանկյունին, այլից զատ, ըստ գտնվելու անկյան, կարող է բացահայտել նաև մյուս երկու անկյունների («սկիզբ» ու «վերջ») իմացությունը՝ ըստ բացահայտող անկյան գտնվելու վայրի: Բայց որ կամուրջը գոյության իմաստ չէ (մարդն ընդամենը անցում է) կասկած-հավատից անդին ճշմարտություն է, որի պարզությունը հենց իրարամերժ տեսությունների առատությունն է:*

*222.*

*Կիրքն ավելի շատ վստահություն է փնտրում, քան՝ սեր, կամ վստահություն ավելի շատ (և գիտակցությանը իր ծագմամբ ավելի շուտ) կիրքն է փնտրում, քան՝ սերը:*

*Ի տարբերություն գիտակցման ցածր շրջանակի սիրո, որը բավականին հաջող ապրում են առանց լրիվ ինքնաբացահայտման (անգամ փակ) առանց բացահայտելու հրեշի էությունը, առավել ևս, դրա իմաստա-*

*վորումը) կիրքը, անկախ գիտակցական շրջանակից, ունի միայն լրիվ ինքնաբացահայտման մղում, ու քանի որ այն երբեք չունի (չի կարող ունենալ) իր լրիվության համապատասխան սոցիալական միջավայր (ինչը նաև զերծ է պահում «անարխիզմից», քանզի հավաքական գիտակցությունը կառուցված չէ ազատության համար) ինքնաբացահայտման համար այն ձգտում է վստահության լոկալ միջավայրի, իսկ երբ չի հանդիպում, վստահություն է գտնում ինքնավստահ ինքնամեկուսացման մեջ, կամ կրողին դարձնում «անարխիստ»՝ հասցնելով պոռնկության:*

*Կրքի մղմանը սերը ներդաշնակվում է միայն, երբ ինքն է վերածվում վստահության միջավայրի, որտեղ սպառնացող վտանգը կույր հավատի վստահությունն է, ինչն անպայման ի հայտ է գալիս իբրև մոլորություն (ապա՝ նաև հիասթափություն) երբ սերը ինքնաճանաչողության և ինքնարարման («փիեզերական սեր») չէ:*

*Անկախ ի սկզբանե առանձնացվածության և գիտակցման հաջորդականության, «փիեզերական սերը», այնուամենայնիվ, կիրքն ապրելու միակ բարձր միջավայրն է, իսկ միայն վստահությունը՝ ճշմարիտ բնականը: Եվ նույն հակադարձությամբ, առանց*

*կրքի սերը երբեք չունի հնարավորություն հասնելու ինքնաճանաչողության այն բարձրությանը, որին կարող է հասնել կրքով, այնուհետև, միաժամանակ, լինելով ինքնաբարման:*

*223.*

*Պետք է հաղթահարվի, որ «վերադառնա» ու պարկանի անպայմանական՝ որպես Բարձրագույն (ինքնարար) Բանականություն (146):*

*224.*

*Կիսատ է արևայինների և անխռովների իմաստնությունը, ու կասկածելի են նրանց բացարձականացված ճշմարտությունները, հետևաբար նրանց սերն՝ առ լույսը, քանզի ճանաչելիներ կան, որոնք տեսնելու համար հոգիդ պետք է անխնա խոշտանգես:*

*Իսկ թե ճշմարտությունները միայն հարաբերական են, դա միայն դրանց ընկալումից հեռու գտնվող «իմաստնության» արդարացումն է:*

*225.*

*Հոգատարություն ստանալուց առավել՝ հիվանդին հաճելի է իր խնամատարին արհամարհելու «արտոնությունը»: Բայց գործարքն արդարացի է, քանզի խնամատարն*

*էլ սպանում է իր բարոյական շահը «առաքինի գործից»՝ իբրև արհամարհանքի «հաղթահարում»:*

*Ես պետք է լինեմ խնամատարության առաքինի դրսևորում՝ այնտեղ խնամատարը ծեծում էր հիվանդին, իսկ հիվանդը երախտապարտ էր:*

*226.*

*Ինքնարար գիտակցությունը հարգանքի տիրույթ ներս չի թողնում, ներսից էլ միանգամից է դուրս շպրտում նրան, ով փորձում է հանդես գալ՝ իբրև հեղինակություն, իսկ երբ «հեղինակությունը» ներկայացված է, նրա հետ նաև ներկայացնողներին:*

*227.*

*Երբ չունի ներկայից ապագա տանող բովանդակություն, անկախ նրանից ներկան հաճելի է դարձնում, թե՝ ոչ, պարզաբանում է այն, թե՝ խճճում, հուշն այլ բան չէ, քան միայն քնարան՝ ծանոթ երազի բովանդակությամբ, հանկարծահայտից էլ անպետք:*

*Սա՝ հուշագրության համար (բավարարման կյանք) և հուշերով (քնած կյանք) ապրելու անիմաստության ու արթմնի ապրելուն (ինքնարարմանը) հիշողության պիտանելիության մասին:*

*228.*

*Չի փոխում այն (48) ինքնարար(ություն)ը միայն պարզեցնում է իրեն բովանդակող փխրությունը (ինչը հակառակ չէ իր զվարթությանը ..., որտեղ խռովքը դեմ չէ անդորրին, ... ) այն մաքրում է ինչպես կպչունությունից, այնպես էլ վանող փխաճությունից, հղկում է մինչև այնպիսի ողորկության, որին սայթաքում են բոլորը, ովքեր փորձում են ներս գալ խղճի և/կամ հպարտության «տրնամաններով»։*

*229.*

*Փոխադարձությունը հարաբերության ցուցիչ է, փոխադարձության ներդաշնակությունը՝ գերադրական աստիճանը հարաբերության արտացվածության, ինչը, սակայն, երբեք ինքնաճանաչողության, ապա և ինքնարարման չէ։ Ճիշտ հակառակը՝ սրանում ամենաշատն է փոխադարձության աններդաշնակությունը, քանզի հանգամանքում մեկը մյուսին կարող է կլանել անմնացորդ (որտեղ, սակայն (երբ) կլանվողը անհանգստություն չի զգում) հետևաբար՝ չի մնում հաշվելի, ...՝ փոխադարձելու ոչինչ։*

*230.*

*Այն ամենում, ինչը համարվում է չարիք, այլանդակություն ..., պարտահում է միայն այն բանի համար է համարվում, որ բարձր բանականությունների հասած ճանաչելինե-րը միջակությունը կիրառ(ում)ել է՝ առանց ընկալելու դրանց էությունը, առավել ևս, առանց հասնելու դրանց լրիվ խորությանը: Նույնը պարտահում է այն ամենում, ինչը համարվում է բարիք, գեղեցկություն ...:*

*Վերջապես, այն ամենում, ինչը դասակարգվում է ԼԱՎ ու ՎԱՏԻ, կա միայն էության միջակ ընկալում, միջակի դասակարգում՝ միջակության փիրույթում:*

*231.*

*Անհնար է ԲԱՆՆ ապրել ամբողջական, երբ ապրումիդ կա թեկուզ մեկ վկա, անգամ, երբ այդ վկան ինքդ ես:*

*...*

*Կարոտանք կա՝ պահանջում է մարդա-կերություն, անկարելիությունից ստանալով դրա վերապրուկային դրսևորումներ, երբ ԲԱՆԸ մեկի, կամ երկուսի միմյանց լինե-լիությունը, էությունը, ... ամենն է:*

*232.*

*Ինքնարարությունն ընկալել գոյության պայքարի, առավել ևս, սոցիալական մրցակցության համատեքստում, այն համարել գոյատևելու և մրցակցելու միջոց, ուղիղ շեղում է դրա էությունից: Բայց անգամ շեղ հայացքին, թեկուզ անհասկանալի, բայց տեսանելի է ինքնարարի հաղթանակած զվարթությունը նաև այնտեղ, որտեղ նա երևակվում է պարտված:*

*233.*

*Ցածրին հաղթելը երբեք բարձրություն չէ, իսկ նրա անհարմարությունից ոչինչ այնքան հեշտ ու արդյունավետ չի ազատում, ինչքան նրան գամելը իր տիրույթին՝ թույլ տալով զգալ, որ այնտեղ ինքը հաղթել է, էլ ավելի՝ հավատալ, որ անպարտելի է:*

*234.*

*Հիվանդացած մարմնին, կամ հոգուն կողմնակի ոչինչ չի կարող բուժել, երբ այն կորցրել է ինքնաբուժման ունակությունը:*

*Առավել նրա նկատմամբ, ով գիտակցությամբ է հասել եզրագծին, անպետք են «հանունով» ձևակերպված բոլոր պատճառները, այդ թվում հարազատ դեմքերի մատնանշմամբ, որովհետև, այդուհանդերձ, դրանց առկայությունը բավարար պայման*

*չեն եղել նրա չհիվանդացման, կամ եզրագծին չհասնելու համար:*

*Եթե կարող է կոչվել օգնություն, ապա միայն ցույց տալով, կամ լինելով ապրելու կամքն արթնացնող, հետևաբար՝ ինքնաբուժման ունակությունն ակտիվացնող այն ավելին, ինչը դուրս էր նրա իմացությունից, կամ ուղղակի ընդունել նրա հասվածությունը և տալ զվարթություն անցման մեջ, կամ նախորդող երկու կամերից այլ իմաստնությամբ պապանձվել ու, գոնե, չձանձրացնել:*

*Սրան հակառակ, արհամարհանքի է արժանի այն հիվանդը, ով, միաժամանակ, կորցրել է արժանապատվությունը և չի կտրում խրատով, խորհուրդով, կամ «հանունով» մեկնված ցանկացած ձեռք ու անցման հանգրվան է ընտրում (ինքնա)խղճահարությունը:*

*235.*

*Որ այն նախորդած բազմաթիվ հանգամանքների (այդ թվում իր մասնակցությամբ) համակցությունն է՝ իր վրա որոշիչ ազդեցությամբ, բայց ինքը կամովին ընդգրկված չի եղել դրանում, գիտակցությունը պատահականությունը վերլուծելու անհարմարություն է զգում և նախընտրում է դրանից արագ ազատվել «պատահական ոչինչ չի լինում» սահմանումով, կամ համակցությանը տալով*

*էություն և իր կամքը սպորադասելով դրան (որտեղ, թեկուզ սխալ պատկերացմամբ, շոշափում է ճշմարտությունը, որ ցանկացած համակցություն (թեկուզ անշունչ) որն ունի դինամիկա, կարող է համարվել բանականություն):*

*Փոխարենը, գիտակցությունը վերլուծությամբ ավելի շատ լինում է անհրաժեշտություններում, որտեղ, սակայն, ստիպված է ավելի շատ բացահայտել իր խաբված լինելը, եթե առաջնորդվի անկեղծ ինքնադիտմամբ:*

*Բարձր (ինքնարար) բանականությունը «պատահական ոչինչ չի լինում» ճշմարտությամբ ավարտելու փոխարեն՝ մեկնարկում է պատահականության ընկալումը՝ պատճառահետևանքային հաստոցը (նախորդած համակցություն) վերագործարկելով ապագային միտված:*

*236.*

*Համեստությունն անգամ չարիքին է հմայք տալիս ...*

*Համեստությունը բարձր ինտելեկտն է, առանց դրա՝ խեղճությունն է:*

*237.*

*Բութ կամքը, որպիսին կա «ամեն ինչ տանել կարողանալու» բարոյական խրատը,*

*չի կարող կոչվել բարձրի հայրկանիշ (ինչպես և խելամիտ անկամությունը) քանզի նրա բծախնդիր արժանապատվությունը չի կարող իրեն թույլ տալ ապրել ցանկացած պայման, անգամ, երբ սահմանողը բնությունն է:*

*238.*

*Տառապանք է նաև (գուցե հենց ամենաև), երբ մեծ ողբերգությունների համար հասունացած (արարված) հոգին սրիպված է ապրել մանր իրադարձություններ: Այդ տառապանքը նրան, ինչպես մայրական պտուկին փոխարինող ռետինե ծծակը երեխային, միայն զբաղմունք է ...*

*239.*

*Որ (ինքն)արարվել եմ, վկայությունն է այն բանի, որ կա(ն) փիեզերական սեր կրող մարդ(իկ): Բայց որ դեռ ապրում եմ, վկայությունն է այն բանի, որ դրանում նա (նրանք) դեռ կիսատ է(են):*

*240.*

*Ինձ չեն սիրում ավելի շատ ոչ այն բանի համար, որ չեն կարողանում դարձնել ծառա, այլ՝ իմ ծառան լինելը մերժելու: «Տերերին» հայրուցում եմ (ոչ կանխամտածված)՝ ինձ ընկերանալու նրանց հետագա փորձն ար-*

*համարիելով, իսկ «ծառաներին» հապուցելու ոչինչ չկա՝ նրանց անսերությունն անհապուցելի բերկրանք է:*

*241.*

*... այնուամենայնիվ, ծերության մեջ ամոթալի բան կա ինքնարարի՝ բարձր ճաշակին:*

*242.*

*Աւպծո վերջին հանգրվանը հավապքը չէ (որպեղ զոհաբերվել է) և ինքն էլ հավապամք չէ, նա կախված է մարդու ինքնապիրապեպման անկարողությունից, ու այապեղ է, որ նրա ինքնաապան ներկայությունը մշպնջենական է:*

*243.*

*Հրապարակից դուրս ու իշխանությունից այնկողմ՝ կա երրորդ-ՄԵԿ-ով հղի, անպերունչ մի այրի, անունը՝ ՀԱՅՐԵՆԻՔ:*

*244.*

*Այն, որ Հիպլերն ինքնաապան է եղել, վկայությունն է այն բանի, որ նրա մղումների հիմքում էլ եղել է անկեղծ սերը: Եթե, այնուամենայնիվ, ինքնաապան չի եղել, նշանակում է՝ նա դավաճանել է այդ սերը:*

*245.*

*Ու կա հիմարի մի բեռակ, որ փենչում է փրկել նրանց, ովքեր համառորեն ուզում են (արժանի են) կործանվել: Խղճի դափնին կրող այս «պայծառագլուխների» ի հայտ գալուց առավել, ոչինչ չի հափշտակում միջավայրի անասնականացումը, ու ոչինչ այնքան չի վնասում մարդու ինքնարարմանը, ինչքան սրանց ժամանակյա հաջողությունը, կամ սերմանած, անասնապաշտություն ծնող հույսը:*

*Ինձ առանձնապես զվարճացնում է նմանների գոյության այն հափվածը, երբ իրենց հպարտությունը խժռում է իրենց թագը:*

*246.*

*Ինքնասուզումն արթնացնում է ցանկացած «օրորոցայինի» քնեցումից: Ու (ապա) միայն այնտեղ է հայտնաբերվում հավերժական արթմնությունը փանելի դարձնող իսկականը՝ օրորոցայինն ինքզինքը:*

*247.*

*Ժամանակակից աշխարհում մարդիկ շարունակում են փրվել կրոնին՝ իրենց կրոնականությունից ազատվելու համար՝ իրենց ոչնչությունից ինչ-որ բանի վերածվելու զգացողության համար: Ըստ իս, անտիկ ոչնչութ-*

*յունն ավելի հարգի էր՝ անկեղծությամբ (իմացության անհնարինությամբ) արդարացված:*

*248.*

*Երբ թվում է՝ փեսնում ես ամենը, քայլ արա վերև: Երբ էլի է թվում, էլի քայլ արա ...: Քայլ արա այնքան, մինչև դադարես փեսնել ընդհուպ հենմանդ կեփը ու կողմնորոշվելու համար սփիպված լինես հափակը շոշափել ձեռքերով, թեկուզ էլ չհասցնես ինքդ, բայց՝ որ լինես Բարձրագույն Ես-ի նախածնողը:*

*249.*

*Դեռ պիփի գան ու արդեն եկել են արհավիրքներ, որպիսին չի փեսել ոչ մի ազգ, ու չկա դրանք հաղթահարելու ազգային ոչ մի նպափակ՝ սին են եղել բոլորը: Բայց քեզ միայն, բարեկա՛մս, ասում եմ՝ հենց այդ արհավիրքներն են լինելու սերմնացանը ազգի, որը չի լինելու արյան, հողի, կամ մշակույթի, լինելու է ազգ ինքնարարների ..., միակը, ով ունակ է լինելու գիփության բերած՝ սահմանային ուղղահայաց ընկալումը զարգացնել այն սափիճանի, որ կլանի անգամ սահմանային այն միավորները, որոնք հորիզոնական չափմամբ մեծ են ավելի: Սրանց էլ, անշուշփ, մարդիկ հարաբերվելու են ինչպես սափվածների՝ մի դեպքում ծառայելու, մեկ*

*այլ դեպքում՝ նրանց կրկեսամարտիկի վերածելու համար, բայց ինչպես ցանկացած հարաբերություն, որի մի կողմը (թեկուզ թյուրիմացաբար) ընկալվել է իբրև ապրված, սույն մեկն էլ է ավարտվելու արյան հեղեղով՝ տարբերությամբ, որ այս միակ դեպքում մարդը չի հաղթելու՝ զոհաբերվելու է բարձրին:*

*250.*

*ԲԱՐԻՆ ինքնաբավ է՝ ՉԱՐԻՆ չի ոչնչացնում, ՉԱՐՆ էլ զվարճասեր է՝ ԲԱՐՈՒ առկայությունը նրա կենսական անհրաժեշտությունն է, ուստի, և նրանց պայքարը միջտնջենական է ՄԱՐԴՈՒ սահմաններում, ինչն ուրվագծվում է այնտեղ, որտեղ ոչ միայն ականատեսն ենք միմյանց սպանելու նրանց (նշված) անկարողության, այլ՝ մասնակիցը (նրանց) միմյանց փրկելու:*

*Մարդ մնալու ընտրությունը միջակություն լինելու ընտրություն է, որի զարգացման բարձրակետը սահմանագծին վկայի վերածվելն է, եթե մինչ այդ չի զոհաբերվում ՄԵԿԻ հպարտությունը կորցնելու, ՄՅՈՒՍԻ՝ ճանճրույթի դատապարտվելու վախին:*

*Իրար դեմ մինչև միմյանց փրկելը պայքարից զատ, դեպք կա, երբ նրանք պայքարում են միասին, երբ ԲԱՐԻՆ ու ՉԱՐԸ չեն խաղում մարդով՝ ծառայում են մարդուն՝ մերժվում են մարդուց, ու դա միակ դեպքն է,*

*որն ազդարարում է ինքնարարի ծննդի մասին՝ մարդու ընտրության մասին՝ չմնալու մարդ, չլինելու միջակություն, լինելու ինքն իր վկան ...*

*Կրոնականությամբ հիվանդ միջակությունը, երբ համարձակություն ունենա առերեսվել իրեն սպառնացող (միակ փրկող) այս ճշմարտությանը, կարող է ԲԱՐԻՆ ու ՉԱՐԸ փոխարինել ԱՍՏՎԱԾ ու ՆԵՌ, այլոք՝ ՄՊԻՏԱԿ ու ՍԵՎ, ուրիշներն էլ ...*

*251.*

*Տարածաժամանակային կոնտինուումը գիտակցության համար միայն պեսականորեն է անքակտելի ամբողջականություն, գործնականում գիտակցությունը դրանց հարաբերվում է անջատ՝ ըստ անցյալին կամ ապագային իր ունեցած միտումի, ինչին համապատասխան՝ ներկան մի դեպքում տարածություն է, մյուսում՝ ժամանակ:*

*Գիտակցության գոյականությունը, ինչին ձգտում է բարձր (ինքնարար) բանականությունը, միակ կոնտինուումն է, որտեղ տարածությունն ու ժամանակը, որպես կետ ու ակնթարթ, կարող են երևակվել անքակտելի ամբողջականությամբ՝ բացահայտելով ՄԵԾՆ ԱՌԵՂԾՎԱԾԸ, որը չունի անցյալ ու ապագա, միայն ներկա ...*

*252.*

***«Ավելին չես նրանից, ինչ սիրում ես»*** *ճշմարտությունը միջակության դաջվածք է, ինչից զերծ լինելու բացառություն ոչ ոք չունի:*

*Մեկը դաջվածքից փորձում է ազատվել անսերությամբ՝ կոչվելով ոչնչություն,*

*մյուսը՝ գերագնահատելով այն, ինչ սիրում է՝ կոչվելով չնչինություն,*

*ոչնչության և չնչինության երկարում է ստանում նա, ով փորձում է՝ իր սերն ուղղելով ասրվածներին և/կամ երկնային կերպարանքներին:*

*Դաջվածքից չի ազատվում նաև նա, ով հաղթահարելով՝ սերը ճանաչել է իբրև Բարձրագույն (ինքնարար) Բանականություն (223), բայց, որովհետև, չի էլ փորձում՝ այդ «ամոթը» կրում է որպես (այլևս) հիմայքի փարր:*

*253.*

*Համապրեզերական չափման գործընթացներում, անհապապես, թե հավաքականորեն, մարդը նշանակությամբ ոչինչ է, բայց հենց միայն չափումների գիրակցումն ու երևույթների իմացականացումը (արարչականության հիմք), անհապապես և հավաքականորեն, նրան կարևորությամբ դարձնում է հարուկ: Եվ սա (դեռ փոքրիկ) ակնարկն է առ*

*այն, որ ինքնարարման ձգտումը մարդուն առաջնորդելու է հավերժական լինելիության առեղծվածում՝ որպես (նաև) արդեն գիտական հենք-հիմնավորում-ձգտում:*

*254.*

*Այո, բայց քամահրանք չկա իմ հայացքում բարձրից, որտեղից, մեծամասամբ, մարդիկ մարդուկներ են, իսկ գիտակցության «կենսոլորտից» անդին՝ զգայական չափումներից դուրս գտնվող բանականություններ(ի(ս) միջև կա միայն հիացմունք:*

*255.*

*Արդեն իսկ մեկնարկած շարունակականությամբ (ինչն օբյեկտիվորեն անխուսափելին է) գիտությունը մի օր նոր, ավելի սուր կոնֆլիկտայնությամբ է առաջադրելու մարդու սահմանման (ճանաչողական) պրոբլեմը, ու թեպետ քիչ է դրա անվիճարկելի բացատրությանը երբևէ հասնելու հավանականությունը, բայց միանշանակ է, որ ընտրված բացատրությունը խարխլելու է առկա, ապա կազմավորելու է պատմականորեն հայտնի բոլորից տարբեր բարոյական համակարգ (մասնավորապես, պատասխանելով «կարո՞ղ է մարդուց ծնվածը (արարվածը) համարվել ոչ մարդ (և հակառակը) կարո՞ղ է մարդ ծնվածը (արարվածը) դադարել համարվել*

*մարդ (և հակառակը) կարո՞ղ է բոլոր օրգանհամակարգերը փոխարինած մարդը համարվել մարդ,...» հարցերին) իսկ փոխարինելիության կոնտեքստում ամենավիճարկելին լինելու է բանականությունը և ոչ մի այլ կենսաբանական օրգան, զգայական, կամ զգացական ունակություն:*

*Ու սրան չհասնելու միակ պայմանը կնշանակի վերջ իմացաբանական զարգացմանը, հետևաբար՝ մարդկությանը:*

*256.*

*Շնորհիվ հանգամանքների, որոնց համակցության արդյունքում արարվե՞լ ես/կաս, թե՞ հանգամանքների, որոնք խոչընդոտել են չարարմանդ/կործանմանդ ...:*

*Ունա՞կ է արդյոք ինքնաճանաչումդ, որի միջոցը, հետո նաև նպատակը, ինքնախաբեությունից ազատականացման անսահմանություն է, հաղթահարել բարոյականության էմպիրիկ պատրանքը ու ծնողներիդ մեջ էլ տեսնել (կամ առնվազն չբացառել) արարմանդ/լինելուդ նպաստած ոչ առաջին (ընդհուպ որպես գիտակցում և ցանկություն) իսկ որոշ դեպքերում նաև հակառակ դիտավորությամբ ՀԱՆԳԱՄԱՆՔ, ապա ընդհանրացնող դատողությամբ տեսնել ճշմարտությունը, որտեղ բնության նն էլ, առավելագույնը ու այն էլ վերապահումով, կարելի է պատվել*

*միայն «խորթ մայր» անվանակոչումով՝ ընդունելով, որ, դեռևս լիարժեք չքացատրված փոխշահավետությամբ, այն միայն մարդու գոյատևման հնարավորություն է ու, միաժամանակ, մարդու գոյությանը սպառնացող առաջին հանգամանքածին էությունը, որի ամենապահյա հաղթահարման անհրաժեշտությունն է այլոց թվում, որ նպաստում է զարգացմանը և արդեն առաջադրում ինքնարարման գիտակցականացումը՝ իբրև ապագայի առաջնահերթություն, որտեղ բացահայտվելու է նաև, որ արարման անգիտակցականության շրջանում էլ չի եղել (չկա) այլ առաջնորդում, քան ԻՆՔՆԱ-ն է:*

*257.*

***Ինչու՞ ենք ապրում, եթե, միևնույն է, մահանալու ենք.***

*Առերևույթ սովորականության վերածված, բայց միշտ անպատասխան մնացած ու բազմաթիվ «գիտական» և ոչ գիտական մնահավատությունների առաջացման պատճառ հարցը, որը հնչեց յոթամյա աղջկաս շուրթերից (գուցե նաև հենց նրա համար, որ հնչել էր երեխայի կողմից) ամիսներ շարունակ բռնանում էր գիտակցությանս և եզակի կպչունությամբ ստիպում պատասխանել:*

*- Մառա. «Բա խի՞ ենք ապրում, որ մեկա մահանալու ենք»:*

*- Գորշ (խորհում). յուրաքանչյուր հարցի, անկախ բարդության աստիճանից, պատասխանը գիտակցելուց հետո այն այլևս մեզ թվում է պարզ մի բան և առաջ է բերում «Ինչպե՞ս չէի տեսնում» զարմանքը: Տվյալ պարագայում ճիշտ կլինի նաև «Ինչու՞ չէի տեսնում»-ը, քանզի իրականում ոչ թե թվում է, այլ ցանկացած պատասխան ինքնին պարզություն է, բարդն այն տեսնելու ընթացքն է (հետո ինչպես պարզվում է՝ պարզապես տեսնելն է) ինչը սխալմամբ վերագրում ենք հարցին և պատասխանին՝ իբրև դրանց հատկանիշ: Պատասխանները քողարկվում են որևէ վերմարդկային բանականության կողմից, թե դասավորվում են ինքնին, երկու դեպքում էլ միանշանակ է, որ դրանք ունեն գտնվելու երկու տեղ՝ փնտրողից դուրս և փնտրողի մեջ, այլ իմաստով՝ փնտրողը պատասխանները չի պայմանավորում իրենով, կամ՝ պայմանավորում է, ինչի արդյունքում մարդը, ելնելով ժամանակշրջանի գերակայող փիլիսոփայություններից, պարբերաբար հայտնվում ու երկատվում է երկու ԿԱՄ-երի՝ «Ոչինչ իրենից կախված չէ» և «Ամեն ինչ կախված է իրենից», ու երկու դեպքում էլ սխալվում է՝ մի դեպքում հայտնվելով ստասփիկ տհաության, մյուս դեպքում՝ դինամիկ ինքնախաբեության մեջ: Այս երկատումից փրկում և երկու ԿԱՄ-երը ԵՎ-ով միակցում է դատողության շարունակությունը.*

*Անսահմանության մեջ մենք հանդիպում ենք երկու խոչընդոտի՝ (դեռ) ֆիզիկական մահ և «ոչինչ հնարավոր չէ փոխել» գիտակցական կողպեք (ինչը, հոգևոր իմաստով, մահվանը նախորդող մահացում է): Առաջինը հաղթահարում ենք հավաքականորեն, իսկ երկրորդից փրկում են անկանխատեսելի աղետները, որոնք ստիպում են դուրս գալ անիմանալիության և ինքնախաբեության կենսակերպից և ճանաչել ՆՈՐ ՃՇՄԱՐԻՏԸ: Բայց բախտն անվերջ չի կարող ժպտալ մեզ, բացի այդ, բարենպաստ հանգամանքների մշտնջենակությունն էլ դանդաղ մահվան ընտրություն է, եթե անիմանալիի հորձանուտում համարվի մեր միակ փարոսը, քանզի այն ստիպելու է մնալ «կամակոր աստվածների» գերին, նույնն է, թե մեր իսկ տհասության և ինքնախաբեության, ինչը գոյությանը սպառնացող վտանգներում վերջին տեղում չէ: Հետևաբար, չկա այլ հուսալի երաշխիք, քան մեզանից դուրս գտնվող հանգամանքների ենթարկումը մեր կամքին, ինչի համար, նախ, պետք է ճանաչել դրանք և ճանաչել ճանաչելու հնարավորությունները (նաև ստեղծելով դրանք) ինչը համակցության մեջ այլ բան չէ, քան հենց (ինքնա)ճանաչողություն, ապա նաև (ինքն)արարում:*

*Այստեղ, ապագայում ապացուցվելու համոզմունքով, ինձ թույլ եմ տալիս միայն մեկ*

*«հավարալիք» առ այն, որ առաջնորդումից զատ, (ինքն)արարումը սահմանվելու է նաև որպես ամեն ինչին նախորդած ճշմարտություն:*

*Եվ ուրեմն, «Բա խի՞ ենք ապրում, որ մեկա մահանալու ենք» հարցը, որին այլ պայմաններում հնչելու դեպքում կարելի էր պատասխանել «Բա խի՞ չապրենք, որ մեկա մահանալու ենք» հակահարցով, իրականում անպատասխան չէ, պատասխանը բարդ չէ, տեսնելն էլ հնարավոր է ու հարցը ինքնին գոյության պատասխան է:*

*- Մառա. «Բա խի՞ ենք ապրում, որ մեկա մահանալու ենք»:*

*- Գորշ. «Այդ հարցի համար էլ ապրում ենք»: Եվ շնորհակալություն ինքնարարման գաղափարի գիտականացմանը նպաստելու համար:*

*258.*

***Մարդ ինքնարար, կամ՝ փիլիսոփայության վերածնունդը.***

*Նույն արգանդից ծնված ու/բայց մինչև փոխադարձ արհամարհանք օտարացած, լայն իմաստով և համակցությամբ, գիտության ՀՈՒՄԱՆԻՏԱՐԻ (ներառյալ արվեստ) ու ԲՆԱԿԱՆԻ (ներառյալ լճացման փուլին հասնող տեխնիկական և IT) հանդիպումն ու համատեղ արարչության չափ մերձեցումն ան-*

*խուսափելի է, եթե չենք ընտրելու պահպանողական դանդաղ ինքնասպանությունը: Դա կլինի հանգամանքների թելադրանքով, թե՛ մենք ինքներս կտեղծենք դրան նպաստող ԲԱՐՈՅԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ, պայմանավորված է նրանից, թե ինչ հետևություն ենք անելու դարի բացահայտումից՝ ըստ որի, ճանաչելիի համեմատ փգիտություն է մեր իմացության չափը, իսկ արարչականության մեջ դեռ նորածին էլ չենք:*

*Այնուհանդերձ, «ԱՆԲԱՐՈՅԱԿԱՆՆԵՐԻՍ» առաջադրած գաղափարը, ըստ որի ՄԱՐԴՆ արդեն սահմանվում է ոչ թե ԲԱՆԱԿԱՆ, այլ՝ ԻՆՔՆԱՐԱՐ, որի համեմատ ներկայիս մարդը անբանական էակ է, գնալով, թեկուզ դեռ տարբեր ձևակերպումներով, երբեմն էլ չգիտակցված, ավելի ու ավելի հաճախ է նշվում ստեղծագործ մտքերի կողմից՝ կրելով նույն վերաբերմունքը, ինչը կրում էին բնական գիտությունները կրոնի և սնահավատության կողմից: Այսօր այդ կրոնի և սնահավատության տգիտության մտրակի դերը կատարում են նեխած ու միայն նկարագրությամբ զբաղված արվեստը, գրականությունը ... և առավելապես նույնի ձևափոխությամբ զբաղված տեխնիկական, թվային ... գիտությունները: Միայն այն, որ «ստրվածները» ոչ միայն չեն սպանվում, այլ վերաձևակերպվում ու անգամ հին բովանդակությամբ շարունակում*

*են գոյություն ունենալ մեծամասնության գիտակցության մեջ, բավարար է, որ հավաքականորեն համարվենք ոչ թե քանական էակ, այլ՝ «քանական անասուն»:*

*Ո՞րն է լինելու հավաքական ուղղությունը, «ասփվածները» դեռ էլ որ դարում են խորհրդանշելու մեր փգիփությունը, անկանխափեսելի է, բայց ԻՆՔՆԱՐԱՐՆԵՐԻ գոյության ակնարկն արդեն այսօր հույս է փալիս, որ չի լինի անդառնալի ուշացած:*

*Այլից զափ, ըսփ այսմ, ցանկացած գիփություն, արվեսփ, գրականություն ..., որն իր մեջ չի կրում ինքնարարման փիլիսոփայությունը և/կամ չի սերվում դրանից, որփեղ եղել է վերը նշված ՀԱՆԴԻՊՈՒՄԸ, համարվում է միջակություն, ինքնարարների սերնդի համար՝ կենդանականություն:*

*259.*

***Պարահականության մասին.***

*Չկա ոչինչ, որ պափահի ոչ ինքնաճանաչողության, ապա և ինքնարարման համար, ինչ էլ պափահում է, պեփք է դարձնել «համար»՝ միայն այս դեպքում է կամքը հակադիր (անպափեհ) հանգամանքի նկափմամբ վերածվում սուբյեկփի, միայն այս ձևում գոյություն ունի կամքի ազափությունը:*

*Ինքնարարը, որպես մարդու հաջորդ (բարձրագույն) փեսակ, միակն է, ում համար*

*«կամքի ազատությունը» բնութագրող հատկանիշից զատ, տեսակի (այլ) անվանումն է՝ մարդ ինքնարար - կամքի ազատությամբ մարդ:*

*260.*

*Մարդը, կամ ինքն իրեն ընկալում է գիտակցականի բովանդակությամբ՝ կոչվելով առողջ բանականություն, կամ ենթա(ան)գիտակցականի՝ կոչվելով հիվանդ բանականություն, որպիսիք, կայուն դրսևորմամբ, ամենայն հավանականությամբ հանդիսանում են միայն հոգեկան հիվանդները: Ընդ որում, ինքն իրեն ընկալելը հեռու է նրանից, որ կոչվի ազատ կամքի դրսևորում, այն առավելապես պարտադրված (ակամա) հանգամանք է, որում հայտնվել է: Ու սա այն բանի համար, որ որոշումների մասին գիտակցությունն իմանում է հետո, քան այն կայացվում է (միշտ) ենթա(ան)գիտակցականում, ու սրանց միջև առկա տիրույթում և ժամանակում հայտնվելն անհաղթահարելի խոչընդոտ է սովորական (առողջ) բանականության համար, քանզի դրանց տարածաժամանակային չափումներն անհամադրելի են. առողջ գիտակցությունը չի կարողանում ընկալել կետի տարածականությունը, ակնթարթի՝ ժամանակայնությունը, առավելագույնը, որ նրան հաջողվում է, երբեմն զարմանքով արձանագրել որոշման և կատար-*

*ման համընկնում (անգամ որոշման մասին իմացության հաջորդում կատարումին) ինքն իր որոշմանը ընդդիմացում, բայց չանելու անկարողություն, իր իսկ կատարումին անհամաձայնություն, ..., վերջապես ինքնահակադրություն, ընդ որում, գիտակցությունն ընկալում է ենթա(ան)գիտակցականից հաղորդվողի միայն այն մասը և ձևը, ինչքանին և ինչպես ունակ է իր սահմանափակվածությամբ, հետևաբար, ստացածի ճիշտ ընկալու՛ մն էլ անժխտելի չէ («արդյո՞ք»-ը միշտ կա): Բատ այդմ, առողջ գիտակցությունն իրականում միայն կատարող է (կամայնությունը թվացյալ է) հիվանդը՝ առանց կատարողի անպետքություն:*

*Առանձնահատուկները, որոնք առողջ բանականության համեմատ համարվում են հանճարեղ, պարզապես անկայուն առողջներն են, ովքեր պարբերական հիվանդացմամբ բախտ/դժբախտություն են ունենում հայտնվել ենթա(ան)գիտակցականի և գիտակցականի միջև առկա տիրույթում՝ կատարողով (գիտակցությամբ) հաղորդակցվելով ան(ենթա)գիտակցականում առկա անսահման իմացությանն ու որոշումների կայացմանը՝ կոչվելով արարող, բայց ոչ ինքնարար, քանի դեռ այստեղ էլ չկա ազատ կամքի գոյություն, կա ակամա հանգամանք (կոչվող բախտ/դժբախտություն, տաղանդ, շնորհ ...)*

*ինչի կամայնության ձգտելուն ու վերածելուն կոչված են բացառապես ԻՆՔՆԱՐԱՐՆԵՐԸ:*

*261.*

*Չեմ սիրում, նաև, ինձ ուղղված ներողությունը. հայցնողին փոքրացնում է այն չափի համեմատ, որ կարող էր ինձանից վերցնել: Սիրում եմ ինքնաներումը՝ այն չափի, ընդհուպ «ինք»-իս անխնա յուրացումը:*

*Ինքս մեղքում մեծ եմ այնքան, որ մեկ խոցվողը երբեք չի դադարում կողոպտվել, բայց արդեն նաև, որպես իր արարման լիությունից հոսելու փեղ:*

*262.*

*Քանի՜ անգամներ է թվացել, թե ահա՛, ինչ-որ փեղ, ինչ-որ մեկում երևակվում է կյանքի սահմանումը, բայց իրականում, ընդամենը, եղել է մահվան փեսակների հերթական համալրումը, և դասակարգումը լոկ ըստ անվանումների, թե ով ինչ է սիրել, նաև, թե ով ինչքան ինքն իրեն չի սիրել՝ չի՛ ճանաչել, չի՛ սպանել ու չի՛ (ինքնա)սպանվել. մահացել, բայց չի՜ ծնվել՝ ինքնարարմամբ չի՛ սահմանվել:*

*263.*

*Ժպտում եմ շրջապողներին, նաև ակամաներին, երբ պատկերացնում եմ իրենց*

*ծնվելուն ապառողների շարքն ու նրանց պատասխան ակնկալող ագահ հայացքները, ու միայն երկրորդներին՝ ըմբռնման թանձր փխրությամբ, իսկ առաջիններին՝ … նրանց ոչինչ էլ չի փրկի:*

*264.*

*Տխրությունից առավել, անփանելի է այն փնականորեն կորցնելը: Ոչինչ և ոչ ոք չկարողացավ փալ ինձ ինքնադիփման այդ հայելու կայունը՝ բոլոր դեպքերն ավարփվ(-եցին)ում են իմ փշրող հոհոոցով, ու դա մնաց միակ կայուն իրողությունը, որը ներարկեցի փխրությամբ:*

*265.*

*Այն աղեփից, որը սովորեցնելու համար է, ոչ մի ուսուցչություն չի կարող փրկել: Կան արթնացումներ, որոնց համար անձամբ նեոին է պեփք հրավիրել …, ու այնպիսիք, որոնց համար պեփք է նեռ լինել:*

*266.*

*… որովհեփև միշփ կիսափ ենք մեռել*
*ու վեր չենք հառնել մոխրից,*
*փփած բնին շիվ ենք աճել*
*ու արմափ չենք բռնել հողից:*

*267.*

*Ինչպե՞ս կարող է բարձր և բարձրացնող լինել սերը նրա, ում կրոնը փրկության աղերս է, պարտությունը՝ փրկվելու փորձարարություն, քաղաքական գիտակցությունը՝ փրկելու խուսափումների կշռում, …*

*Ինչպե՞ս կարող է ցածր և ցածրացնող չլինել սերը նրա, ում գրականությունը ողբաբառաչանք է հուսախաբության՝ աղերսանքում, փորձարարության մեջ ու խուսափումներում, …*

*Բայց, նաև, ինչպե՞ս կարող է այսչափ ինքնաոչնչացման հակված սերն այսքան երկար մեռնել …*

*… այսքան մեռնել ու չգիտակցել, որ ոչ թե փրկվելու, այլ՝ ինքնարարման համար է սպեղծվել:*

*268.*

*Այնպիսի բարոյականության միջավայրում, որտեղ ընտրությունը «պառաված կույսի» և «կուսացած պառավի» մեջ է, սերը, որպես բարձր բանականություն, նախընտրում է «պոռնկապանը» ինքնամոռացվել …*

*269.*

*Սեփական վեհության ստվերում խեղճացել ես, բայց արևից շեղող մահիկը ևս գոյություն ունի արևով: Մահաբեր օղակից*

*դուրս գալու համար՝ պետք է մեռնես, պետք է վերածնուղդ հետաձգող փրկչությունները մեկ անգամ մերժես, կիսախավարում հայտնվելու (մնալու) փոխարեն՝ մեկ անգամ ինքդ խավարն ընտրես՝ թանձր այնքան, որ մահիկն էլ մահանա, մոլորությունդ էլ արևից՝ քավություն սպանա:*

*270.*

*Էլի փորձանք թակեց դուռդ, որ արթնացնի,*

*իսկ դու նորից ննջեցնող «փրկչի» ձեռքը բռնեցիր ...*

*Բայց լույր ունեմ ապագայից քեզ համար,*
*որ պետք է լսես ամոթահար,*
*քանզի խուրն է ժառանգիդ՝*
*թողածովդ լծակիր.*
*«Արթնանալդ ընտրելիք չէր, հայր,*
*բախտդ էր արևագիր,*
*ու այս խուքից էլ բացի,*
*մեզ ոչինչ կապող չկա,*
*քանզի (երբ) քո՛ փոխարեն՝*
*ես դարձա ինքնարար,*
*վարդապետի փոխարեն՝*
*դեռ (միայն) նախահայր»:*

*271.*

*Սերը բարձր բանականություն է, սիրել՝ կնշանակի ձգտել բանականության բարձրագույնին, սիրել միմյանց՝ կնշանակի ձգտել միասին:*

*Բայց այստեղ բանն այն մասին է, որ ցածր խնտելեկտը, առավել ևս հիմարը, ընդունակ չէ սիրել, և այն, ինչ հասարակացված բառի ներքո հաճախակի լսվում է (թեկուզ անկեղծ) այլ բան չէ, քան գիտակցականորեն ձևափոխված դրսևորում նույն կենդանականության, որպիսին բնազդային մակարդակում կրում են այլ կենդանիները, ու սրանց մոտ էլ, վաղուց ոչ զարմանալիորեն, արձանագրվում են հատկանիշներ, որոնք վերացնում են դրանց առանձնահատուկ մարդապատկան լինելը, որոնցով մարդիկ սովոր են բնութագրել սերը, համարվել սերը ճանաչող և սիրող:*

*272.*

*Իրար ատող անտիպոդնե՛ր, ձեր փոխադարձ պետքությունն անշուշտ մեծ է, ձեր փոխադարձ սերն իրապես անկեղծ է, ինչպես որ սերը գիշատչի և զոհի միջև, և դուք անկասկած խելամիտ եք ձեր սիրո մեջ, երբ միանգամից չեք հոշոտում ու հոշոտվում՝ ապառվելու փոխարեն նախընտրում եք իրար պայմանավորող տևականությունը, ու սրանով, խելամիտ լինելուց զատ, ձեր սերը*

*նաև ուտելու և ուտվելու ճաշակ, էթիկա, էսթետիկա ունի: Դուք նաև հանճարեղություն ունեք ձեր սիրո մեջ, երբ նույնն անում եք՝ բաց թևակով առանձնացած համայնքների, համայնքների ներսում՝ առանձնացված պարապետակի, ինչը չի կարողացել անել բնությունը կենդանականության իր հանկարծապտեղծության մեջ:*

## *273.*

*- Ի՞նչ անել համապարած հրդեհի պայմաններում, երբ անհապապես էլ ոչինչ անել չես կարող:*

*- Չնմանվել ոչ նրանց, ովքեր աղերսում են փրկություն, ոչ էլ, նամանավանդ, նրանց, ովքեր մորթապաշտորեն են փրկվում:*

*Նույն կրակից վառել վերջին ծխախոտը ու իրողությանը հետևել՝ իբրև արվեստի հանճարեղ գործի, չէ որ, վերջին հաշվով, այդպիսիք հենց ողբերգություններն են:*

*Մոխրանալ քահ-քահ ծիծաղով ու չլինել ամենքի պես մորթապաշտ և/կամ աղերսող:*

## *274.*

*Ինչու՞ իմանալ ճշմարտությունը, ինչու՞ մեն է ճշմարտության նպատակայնությունն առհասարակ,*

*թեկուզ միայն նրա համար (նրանում) որ զսպանակն ուղղվի կամ, գոնե, թուլանա, անցյալին հենված, բայց միշտ ներկայում*

*խփացող չիմացությունը չքացվի հանկարծակի ու չճզմի ապագայի անորոշություն պատրին:*

*275.*

***Բարձրագույն Ես-ը հանրակեցության կազմակերպիչ.***

*Ճորտի համար արդարամտության դրսևորման օրինակը վարակիչ լինել չի կարող, գուցե նրա հիացմունքը շարժում է, բայց դա էլ ներծծված է նախանձով, իսկ տեսնելով, թե արդյունքում ինչ պետք է հաղթահարի, սարսափած ավելի է խորանում ստրկության մեջ: Ընդ որում, կես բահ խորությամբ շերտն է նրան պարտադրվում, մնացածն ինքն է իր համար ճանկռում, ու այնքան խորը, որ որևէ սարված չի կարող փրկության ձեռքն այդչափ երկարացնել:*

*Կեղծիք է նաև՝ արդարությունը պայմանավորել խղճով: Խիղճը հենց այն փրփախտն է, որն այլանդակում է արդարությունը, հետևաբար՝ ամեն բան: Արդարությունն այլ բան չէ, քան համաձուլվածքը բարձր բանականության և ամուր կամքի, հետևաբար նա, ով հավակնում է դրսևորել հանրային ատրճանի արդարամտություն, պետք է դաժանությունը դարձնի իր սիրո առհավատչյան և բահը վերցնելուց հետո իսկ ճորտերին թաղի իրենց հորում՝ հնարավոր սողանքների*

*պատճառով նրանց ազատականացումը կանխելու համար, քանզի իր կամքից անկախ ազատություն ստացած ճորտը չի կարող անել ոչինչ, քան միայն գարշանք տարածելն է, իսկ ճորտի կամային ազատականացում երբեք չի լինում՝ Ես-ը կամ ինքն իրեն տեր է, կամ՝ ուրիշի ճորտ, մնացածն ընթացիկ հարաբերականություններ են:*

*276.*

*Պատահականությունը՝ իբրև ստրծո կեղծանուն, կամ անստորագիր գործելու միջոց, կամ արտահայտվելու մեթոդ (և այլն) համարելու փոխարեն՝ ավելի ճիշտ է նրան հենց որպես պատահականություն էլ սահմանել, այլից զատ, որի ներքո կարող էին հաշտվել բոլոր կրոնները, բայց կրոնը հո հաշտության համար չէ. այն պատահականությանն ամենամոտ կանգնած կանխամտածված չարիքն է:*

*Միակ խաղը, որտեղ ստրված բացակա է, ճատրակն է, ու այստեղ միտքը ոչ այնքան կամքի (բանականության) ազատության խորհուրդի մասին է, որքան մարդու ինքնարարման, և խաղը լավագույնս է պատկերում բարձր բանականության անարատությունը խղճից և հպարտությունից, ինքնարարման ընթացքն իր ողջ հմայքով՝ զոհաբերությունից մինչև սպանություն, ինքնազոհությունից*

*մինչև վերածնունդ, որտեղ նախասահմանում, ապա և առաջնորդում է բացառապես սերը՝ առ Բարձրագույն Ես-ը:*

*277.*

*Չկա ո՛չ ընդհանուր դժբախտություն, ո՛չ էլ, նամանավանդ, ընդհանուր երջանկություն: Նույնիսկ այն պարագայում, որ մայրամուտն ու արևածագը բոլորի համար են, դրանց ապրումն ըստ ամենքի է ու մեկինը երբեք ուրիշինը չէ: Բայց եթե, այնուամենայնիվ, կա ինչ-որ ճղճիմ մխիթարանք նրանում, թե իբր կա ընդհանուր դժբախտություն և այն միավորում է մարդկանց, ապա ճշմարտությունն այն է, որ ընդհանուր դժբախտությունն ընդամենը բացահայտում է, թե ինչքան անջատ և հեռու ենք իրարից, ու թե ինչքան առնչություն չունենք մեկս մյուսին:*

*Հատկապես այն ժամանակ, երբ միավորելու համար (թեկուզ անկեղծ միտումով) բեմահարթակի դեմագոգներ են դառնում սերը, հայրենիքը, «հանունով» մնացած այլերը, մահը զվարթ քամահրանքով ծիծաղում է, քանզի այն, ինչ չի հաջողվել իրեն, չի կարող ուրիշ մեկին հաջողվել, իսկ ընդհանուրի իմաստով՝ անգամ աստվածներն են իրեն զիջել:*

*Այս ճշմարտությունը մեկին դարձնում է գիշատիչ, մյուսին՝ զոհ, որոնց փոխադարձ*

*սերն իրավամբ ավելի անկեղծ է, քան երբ լի-նում է ղեսակի առանձնացված համայնքի ներսում, բայց կա և ճշմարտությունից սեր-վող երրորդ մեկ ուղղությունը, որտեղ միա-վորում է հենց անջատն ու հեռուն, որտեղ մահն էլ է լուրջ հետաքրքրությամբ հետևում, այն, իհարկե, կոչվում է առ Բարձրագույն Ես-ը ինքնաճանաչողություն-ինքնարարում, ու մահն էլ չի ծիծաղում, մխում է այնպես, ինչպես հեշտանքից հետո ...*

*278.*

*Օգնության կանչն առաջնահերթ գրա-վում է թշնամիների ուշադրությունը, ... անակնկալի բերող, հետևաբար և փրկվելու հնարավորություն ստեղծող միակ հանգա-մանքն այն է, որ առաջինը հասնելու դեպ-քում՝ նրանք հանդիպեն մահապարտի:*

*279.*

*Խցանված բանականությամբ մարդը ոչնչով չի տարբերվում ինչպես անբանական կենդանիներից, այնպես էլ բույսերից (այդ-պիսիք հենց որպես կենդանի, կամ բույս էլ գոյություն ունեն) իսկ խցանման մեջ ձևի ցանկացած նորարարություն այլ բան չէ, քան այլ կենդանիների, բույսերի կենսակեր-պում վարքագծի նոր տարրերի հայտնվելը, որոնք ոչինչ չեն փոխում և նրանց իրենց*

*էությունից ավելին չեն դարձնում: Բացի այդ, մտքերն էլ, որոնք ինքնին, անկախ իրենց արտահայտման ձևից (հաղորդակցությունից մինչև ստեղծագործություն) գտնվում են գոյության «բնական» մրցակցության մեջ, դադարել են լինել հետագա աճման ներուժով սերմեր՝ դրանք առավելապես ի հայտ են գալիս իբրև արդեն բազմացմանը ոչ պիտանի հասվածությամբ, էլ ավելի հաճախ՝ արդեն նեխած, կամ չորացած պտուղներ, որոնք օգտագործվում են մեկանգամյա սպառման համար և իրենց հարատևությունն ապահովում են բազմակրկնությամբ՝ այդ կերպ, միաժամանակ, դառնալով նորի աճման վնասատուներ, ու սրանում կա ինչպես իշխելու դիտավորություն, այնպես էլ տգիտության ինքնաբավարարման միտում:*

*Հետևաբար, նորը, որպեսզի զարգացման հնարավորություն տա, բավարար չէ, որ լինի աճման ներուժով սերմ ու հանգամանքների բերումով հայտնվի գիտակցական բերրի միջավայրում (այդպիսին էլ չկա) այն, միաժամանակ, պետք է կրի վնասատուներին դիմակայելու և միջավայրը դրանցից ազատականացնելու անխողճություն, քայց այդմ՝ իր ձգտման մեջ երբեք չպետք է դադարի լինել անողոք, իսկ այդպիսի նորն արդեն կա, որը կոչվում է ինքնարարչություն, և դրա*

*ձգտումն է մարդուն բանական կոչվելու խցանումից ազատելը և սահմանելն ինքնարար՝ առ Բարձրագույն Ես-ը:*

*280.*

*Չարն ու բարին կերպարանք են ստանում՝ ըստ մարդկանց սնոտիապաշտության, որում մարդկային երևակայության այլանդակությունն անգամ դրանց արարիչների զարմանքն ու զայրույթն է շարժում, թե ինչ տարատեսակ անասունների են ստիպված վերածվել՝ բանական արարածին հասկանալի արտահայտվելու համար, ինչում նրանց հիպերիկ նույայի մեջ է զգում հատկապես այն, երբ ստանում են մարդկային շուշտանդամ կերպարանք, ու նրանք արդեն ինքնակամ են զուգակցվում ինքնարարներում՝ իրենց իսկ էության անդիմակ առերեսվելու՝ ինքնին ու, որ ամենակարևորն է, փոխադարձ կրքերում ազատ լինելու համար:*

*281*

*Եթե անգամ ստիպված ենք մարմնով տրվել, գերեվարվել, սպանվել՝ թիրախի գիտակցությանը հասնելու համար, տրվենք, գերեվարվենք և սպանվենք հաղթողի հանգստությամբ ու տիրողի փառքով վեր բարձրացրած ձեռքերով, քանզի, տիրելով նրանց գիտակցությունը, տիրեցինք նրանց*

*ներունդներին ու ապագան, որից բացի՝ գոյության այլ փիրույթ չունի հաղթանակը՝ այն հենց ինքնին ապագայի հասկացություն է ու հենց ինքը ապագան է, որն այդուհետ և հավետ մերն է՝ ինքնարարներինը: Թող մեզ մխիթարի ճշմարտությունը, որ պարտությունն անցյալի հասկացություն է, միջակությունից սթափեցնի իմացությունը, որ հաղթանակն ու պարտությունը ներկայում ընդամենը հաջողություն և անհաջողություն է, իսկ մենք կոչված չենք լինել միջակություն, քանզի մեր ձգտումն ամենն է, թիրախը՝ ամենայն բանականը:*

*282.*

*Թե որ ուզես իմանալ՝ ու՞մ կամ ի՞նչ գաղափարի ծառա է հիմարը, փես, թե ով է նրա սփամոքսը լցրել և փվել ճոխ հուղարկավորության խոսփում, քանզի հիմարի մարմնականից մինչև հոգևոր սահմանը հենց դրանով էլ չափվում է, ու նրա միակ հիասթափությունն էլ այդ երկու հանգամանքում է, ինչը նա երբեք չի ներում նրան, ով հիասթափեցրել է:*

*Մեր նպափակի համար՝ հիմարը և/կամ դրա հոգնակիացված ամբոխը չեն կարող լինել միջոց, քանզի մենք հենց հիասթափություն փալով էլ մեկնարկում ենք բանականության նվաճման մեր փառահեղ ուղին:*

*283.*

*Ինչպես որ պատրանք էր շատերի գիտակցության մեջ նստած (իսկ ավելի ճիշտ՝ նստեցրած) համոզմունքը, որ աշխարհում այլևս հնարավոր չէ, որ մի երկիր հավակնի ֆիզիկապես նվաճել մեկ ուրիշի, որովհետև, իբրև թե, մարդն արդեն հասել է այդ անմարդկայնությունը մերժող բարձր բանականությանը, այնպես էլ պատրանք է ընդարմացումը, որ էլ չի կարող ստեղծվել աշխարհը նվաճելուն հավակնող հավատամք: Բատ այսմ, ինքնարարությունը ոչ միայն լիիրավ է լինելու այդ հավատամքը, այլ՝ միակն է, որ իր ձգտման մեջ ներդաշնակում է մարդկային լինելիության այդ բոլոր հակասականությունները՝ նվաճում, բարձր բանականություն և անմարդկայնություն, որովհետև այն հենց մարդկայնությունն էլ մերժում է՝ իբրև իրեն նախորդած անսեր կենդանականություն:*

*284.*

*Որպես կանոն, մարդը մարդուն չի հավատում և հավատի մասին բոլորին ուղղված հարցադրումները, թեկուզ պատկերացումների տարբերությամբ, բայց ամփոփվում են ընդհանուր մեկում՝ մարդը հավատում, կամ ձգտում է հավատալ մի բանի, ինչը դուրս և բարձր է մարդկայինից, և եթե անգամ հանդիպում է դեպք, երբ մի մարդ հավատում է*

*մեկ ուրիշ մարդու, ապա նրա հավատին ուղղված հարցադրումները և հանգում են նույն բանին. նա նրանում տեսնում է իրենից դուրս և բարձր ոչ մարդկայինը: Նույն համոզմունքով՝ բոլորն իրենց ուղղված հավատն էլ տեսնում, կամ փորձում են տեսնել մի բանի կողմից, ինչը դուրս և բարձր է մարդկային լինելուց՝ ըստ այդմ, իրենք իրենց զգալով դուրս և բարձր մարդկայինից:*

*Համակցությամբ սա այլ բան չէ, քան հիմնավորումը նրա, որ մարդու «ապրվածանալու» փառասիրությունն ունի օբյեկտիվ հիմք՝ ներուժ, ինչը, սակայն, նրա բանականությունն ամբողջությամբ չի կարողանում բացահայտել, որովհետև բանականությունն ի սկզբանե դրված է ՄԱՐԴ ինքնասահմանման փականի տակ, որից այնկողմ նա կարողանում է դուրս գալ միայն սնոտիապաշտությամբ:*

*Այս իմաստով՝ ինքնարարումը, այլից զատ, կարող է կոչվել բանականության ազատականացման իմացաբանություն՝ առ մարդկայինից դուրսն ու բարձրը՝ առ ինքնարարը՝ Ես-ի Բարձրագույնը:*

*285.*

***Եթե ավելի հասարակ, ապա.***

*Սերը ոչ հավատամք է, ոչ էլ, առավել ևս, կրոն, այն մատաղացու է հավատամքի մեջ: Հանուն ինչի, ինչպես և երբ զոհաբերեցիր, զոհաբերեցի՞ր արդյոք, թե՞ մեռցրիր ծերացմամբ, կամ ուրիշի երախում, ըստ այդմ էլ սահմանվում է՝ ով ես դու և ինչպիսինն է ճաշակդ:*

*Իսկ ի՞նչը կարող է ավելի բարձր լինել Բարձրագույն Ես-ի ինքնարարումից և ուրիշ որտե՞ղ կարող է ավելի նրբաճաշակ զոհաբերվել սերը:*

*286.*

*Պաշտելն ու ատելը խիստ անձնական են՝ անհատական նվաճման և/կամ կործանման երևույթներ, որոնք ավելի շատ «հիգիենայի» փիրույթից են, քան բանականության: Հետևաբար, բոլորի նկատմամբ՝ իբրև բարձր ճաշակի դրսևորմամբ վերաբերմունք, կա միայն հարգալից վարվեցողության (հեռավորության պահպանման) պահանջ, ուրիշ ոչինչ:*

*287.*

*Ընդհանուր առմամբ, մարդ բանականի պատմությունը ամփոփվում է երկու ժամանակաշրջանում՝ կռապաշտությունից կրոն, կրոնից աղանդ, որոնց միջակայքում գիտությունն ընդամենը հասցրել է փախցնել*

*փոքր պատառն իր ազատության՝ մինչև հայտնվելը մեկի, ապա մյուսի իշխանության տակ: Հաջորդն ու միակը, որն իրապես կարող է համարվել գիտակցական զարգացում (ազատականացում), մարդ բանականից անցումն է մարդ ինքնարարի՝ առաջինում թողնելով նախորդած ողջ անասնականությունը և ճախողելով դրանց համակցված գոյության բոլոր փորձերը: Հենց այս նպատակի համար՝ ինքնարարները չպետք է դրսևորվեն իբրև հերոսներ և լինեն հիմար այնտեղ, որտեղ (դեռ) պետք է լինել դարանակալած վարակ:*

*288.*

*Միամտություն է կարծել, թե առաջատար կրոններն ի զորու չեն վերացնել աղանդները: Ընդհանուր նպատակը նրանում է, որ վանդակից դուրս եկողը հայտնվի մեկ այլ վանդակում, իսկ վանդակները լինեն դասավորված, ինչում անգամ էսթետիկ կարգ կա:*

*289.*

*Հավասարությու՞ն, այո՛, լինում է, բայց կենդանաբանական այգում, որտեղ տարբեր տեսակների հավասարությունը վանդակն է, կառավարիչն էլ նրանց անազատության ապասավորն ու գերին է:*

*Իսկ թե ինքնարարն ո՞վ է այս ամենում, ապա, ինչպես արդեն բնութագրվել է, դարանակալած վարակ է, որը սպասում է լեշի հետ դուրս գալու իր հնարավորությանը:*

*290.*

*Կյանքն իբրև թատերական բեմականացում դիտելու դեպքում՝ բոլորն ամեն բան կհասկանային, բայց կյանքն իրականություն է, բեմականացումը՝ կենդանի, ուստի և այն մնում է բոլորին անհասկանալի՝ իբրև խրթին դրամա ու վերաբերելի՝ իբրև ողբերգություն: Սրանից զատ ու այս համատեքստում՝ մարդիկ սովոր են իմաստուն համարել, ապա և հետևորդ լինել նրան, ով ապագայի հանգամանք է գուշակում: Բայց ճշմարտությունն այն է, որ ցանկացած հիմարություն էլ, ինչպես անսարք ժամացույցի կողմից օրվա ընթացքում երկու անգամ ճիշտ ժամ ցույց տալու հայտնի սցույթը, կյանքի որոշակի շրջափուլում համընկնում է իրողությանը, ու թե շատերն այն կոչում են մարգարեություն, մենք այդ կոչման տակ հիշատակում ենք հնչեցված իմաստնության ու այն առաջադրողի վախճանը: Եվ ուրեմն, մեզ տրված չէ լինել երկնքում փայլատակող աստղ ու անկարելի է լինել այդպիսին նրանց համար, ում ապագան այլ բան չէ, քան վերադարձող անցյալ, իսկ ներկան՝ դրա ակնկալվող սպա-*

*սում, մեզ նաև անպարվաբեր է նույն շուրթե-րից կոչվել իմաստուն, միրածող, առավել ևս՝ հերոս:*

*Սրա փոխարեն՝ մեզ նախընտրելի է արիական պարկեշտությամբ բյուրեղա-նալ խավարում և ինքնարարների անհատա-կան գոյությունից դուրս հորդել իբրև փեսակ, երբ այլևս ոչինչ ի զորու չի լինի քանակա-նությունը սահմանափակել զսպաշապիկի մեջ, որը կոչվում է մարդ:*

*291.*

*Խառնարանից մինչև Բարձրագույն Ես-ի ինքնարարում, ցավ-երանությունից զատ ու դրա հետ մեկտեղ, թանձր կարոտ կա խառ-նարանին ուղղված՝ անմարմին կարոտ, որը, սակայն, աչքեր ունի հետապնդող և բուր-մունք ունի անէացնող, ու թեպետ մեղանչա-կանությունս էլ եսասիրություն չունի, որ այն կրկին մարմին առնի, բայց ես արդեն գիտեմ, թե հրեշտակներն իրականում ինչպես և ին-չու են ծնվում, վերջում հայտնվելու համար՝ ինչու են ապաստանում անցյալում, ու թե ինչքան չունեն մարդկանց պատկերացմանն առնչություն ...*

*292.*

*Էժանն ու ճոխը կարող էին հաշտվել անհրաժեշտությունում, խեղճությունն ու*

*հպարտությունը՝ արժանապատվությունում, աղքատությունն ու հարստությունը՝ չափավորությունում ..., բայց այդպես չի լինում լոկ այն բանի համար, որ նույն գլխին ենթակա երկու ձեռքերն ինչքան էլ տարբեր, միևնույն է, իրար պայմանավորող են, բացի այդ, միմյանց նկատմամբ աքողված համակրանք ունեն ու  համակիր են հատկապես նրա՝ երրորդ մեկի դեմ:*

*Սա իմանալով, ինքնարարը, եթե անգամ որոշում է դուրս գալ առճակատման, ապա չպետք է ունենա գիտակցությունից բացի այլ թիրախ, ու, որպես միջոց, չպետք է անի հաշտեցման միջնորդություն և, ընդհանրապես, որևէ տեսակի քարոզ:*

*293.*

***Բարձրագույն բանականությունը՝ ինքնարարի նպատակ.***

*Ամբողջը ճանաչելու համար առանձնանում ես որպես մաս, բայց էլի չես տեսնում, քանզի ամբողջից բացակայում ես ինքդ: Հետո առանձնանում ես որպես ավելի փոքր մաս, որ տեսնես ավելին ամբողջից: Հետո ավելի ու էլի՝ շարունակաբար ինքնաոչնչանում ես մինչև ամբողջի տեսանելիության ամբողջականացում, ու գիտակցության զրոյականացմամբ ճառագում է ճշմարտությունը, որ ինքնաճանաչողությունդ ճանաչո-*

*ղություն էր առ այն, ինչը դու չես, ինքնաոչնչացումդ ինքնահաղթահարումն էր կախվածության, իսկ այն, ինչ մնացել ես, նախապայմանն է բարձրագույն բանականությանը ձգտման, ու մնացել ես այն, ինչը կոչվում է ՈՉԻՆՉ, կամ ինքնարար՝ Բարձրագույն Ես:*

*294.*

***Գիտակցությունը ժամանակի հորձանուտում.***

*Ժամանակի մեջ ամենահազվադեպ հանդիպող բանը պահն է ...*

*295.*

***Ինքնարարի ճանապարհային քարտեզ.***

*Ինքնի համար չկա ուղղություն փվող այլ ճշգրիտ հանգամանք, քան հանդիպող վախն է, հետևաբար և այլ ճշգրիտ ճանապարհ, քան վախի հաղթահարումն է: Եթե հնարավոր լիներ նշել բոլոր հանդիպած վախերը, յուրաքանչյուրը կստանար իր անհատական (ինքնաճանաչողություն-ինքնահաղթահարում-ինքնարարում) քարտեզը՝ այդ կերպ բացահայտելով, թե որտեղից ուր պետք է գնա(ր) ու թե ինչքան է հաջողել և/կամ ձախողել: Բայց քարտեզը չի տրվում նախապես ու էլ ընթեռնելի չէ վերջից, իսկ վերջին վախի մասին հայտնի է միայն այն, որ այն Բարձրագույն Ես-ին նախորդող վերջին հանգամանքն է:*

*296.*

*Ցավալի է, որ կատարվածի ճշմարտությունը կարող է իմացվել տասնյակ, հարյուրավոր, հազարամյակներ անց, ու ցավալի է ավելի, երբ ժառանգաբար ներկայացնում ես նրան, ով խաբվել է, բայց նրա համար էլ ոչինչ փոխել չես կարող, իսկ իմանալը նոր սպի պարր է, որով պետք է խաբվես ինքդ:*

*Այս ցավը ոչ միայն պետք է մեզ ուղեկցի, այլ՝ խնամվի ու անհրաժեշտաբար պահվի, և, ինչպես զինվորի օձիքին մխրճված ասեղը, ինքնարարներիս քնանալուց զերծ պահի ...*

*297.*

*Անհատի ամբողջ դժբախտությունը նրանում է, որ նա կարող է իր մեջ կրել ու (վեր) ապրել ողջ մարդկության ողբերգությունը, երբ մարդկությունը, իբրև էություն, գոյություն չունի:*

*Ոմանք սրանով հասնում են դրախտի դարպասներին, ոմանք՝ դժոխքի, ոմանք, գուցե և հյուրընկալվում են, կամ ներխուժում են ներս, բայց ինքնարարի համար այդ անէությունը չի կարող և չպետք է լինի այլ բան, քան սեփական էության արարչության անհրաժեշտ հանգամանք և, որպես այդպիսին, միակ իրողություն, երբ գոյի հավաքականությունը ծառայում է մեկ-ի գոյացմանը և ոչ հակառակը:*

*298.*

*Իրականությունից առավել՝ ինձ անհանգստացնում է շրջապատող մարդկանց վախեցած հայացքները և այդ հայացքներում նկատվող ինձ հոշոտելու ցանկությունը, երբ ցույց եմ տալիս, որ ողջ եմ: Ու հենց այստեղ ինձ օգնության է գալիս իմ խաղաղասիրությունը՝ ես նրանց պատասխանում եմ ցինիզմով ու թաղում երանավետ հանգստությամբ:*

*299.*

*Կուզեի՞ ապրել այն աշխարհում, որը ներկայացնում է նա, եթե լիներ պարաշխարհիկ, իսկ ինքը՝ առաջին հանդիպածը: Սա այն հարցն է, որը տալիս եմ ինքս ինձ, երբ հանդիպում եմ ինչ-որ մեկին:*

*Չգիտեմ՝ այս կողմնորոշիչն ում ուր կհասցնի, բայց փորձս ինքնարարների համար խորհուրդ ունի. դուք պետք է նվաճեք աշխարհը, ու դրանում չպետք է լինեք չափազանց զգուշավոր:*

*300.*

*Հասարակ իմացություն է, որ անգամ երազի ազդեցությամբ կարող ես համակրանք ձեռք բերել մեկի հանդեպ (ընդհուպ սիրահարվել նրան) ում չգիտես, կամ գիտես անտարբերությամբ (ընդհուպ հակակրանքով) և սրա հակառակը ...: Հասարակ իմա-*

*ցություն է նաև այն, թե երազի վրա ինչ ազդեցություն ունի գիտակցությունը, ու առավել հասարակ է գիտակցության վրա արտաքին ազդեցության իմացությունը: Բայց հասարակից առավել հասարակի գնացող այս դատողությունը չի ավարտվում պարզագույնով ու, որպես այդպիսին, միայն սկիզբ է դնում ԻՆՔՆդ անհետ կորցնելու մեծ վտանգի, երբ միտքդ սկսի փնտրել կամքդ՝ հսկայական սարդոստայնի յուրաքանչյուր հանգույցում:*

*Պատահական չէ, որ մահվան եզրից դարձածներն արթմնություն են զգում, ինչը, սակայն, նրանցից շատերն արագ էլ կորցնում են, երբ փորձելով բացատրել ըստ առնկա պատասխանների՝ կրկին հայտնվում են արտաքին ազդեցությամբ գործված սարդոստայնում: Բայց այստեղ մահն ընդգծվում է իբրև միակ անկասկածելի, հետևաբար, ԻՆՔՆը գտնելու (արարելու) միակ հնարավոր սկիզբ, որը, չհաշված պատահական բացառությունները, հանդիպում է վերջում: Ըստ այդմ, Բարձրագույն Ես-ի երրորդության մեջ ինքնառչնչացումը (ինքնահաղթահարումը) կրում է մահը վերջավորից ընթացիկի վերածելու, պատահական բացառությունը անհրաժեշտ կանոնի վերափոխելու նշանակություն, որին ինքնաճանաչողությունը պարբերաբար հանգում է անկամ հանգույցները խզելով և որից, միաժամանակ, մեկնարկում*

*է կամային հանգույցների սպեղծումը՝ ինքնարարումը:*

*Ու մինչ այն պահը, երբ բանականությունը ձեռք կբերի ինքնամաքրման անարատություն, ԻՆՔՆը սփիպված է ապրել բազմաթիվ մահեր ...*

*301.*

*«Եթե քեզ տրվի բոլորի համար նույն մեկ ցանկությունն իրագործելու հնարավորություն, ապա ի՞նչը կլինի այդ մեկ ցանկությունդ և ինչքա՞ն ճշգրիտ կարող ես այն սահմանել, որ դրա իրագործումը չվերածվի աղետի». սրանք այն հարցերն են, որով ամենակարող արարիչը սկսում և ավարտում է զրույցը մարդու հետ, ու մինչ վերջինս հայտնվում է շփոթվում, չնկատելով երկրորդ հարցով առաջինի պատասխանը բացառելու ակնարկը, որն արդարացնում է եղած կարգը, նա երես է թեքում մարդուց՝ ստորակարգին ցույց տալով իր տեղը:*

*«Իսկ ինչու՞ չկամենալ ինքնարարում ...». հակահարց, որով ամենակարողն ընդունում է ինքնարարի՝ իրեն համադաս կարգը ...*

*302*

***Այն, ինչ մեզ սպանում է, արագացնում է մեր ծնունդը.***

*Բանականորեն, զգացմունքայնորեն և հոգեբանորեն մենք պատրաստ ենք, բայց որպեսզի եռամիասնությամբ ծնունդը լինի և լինի հայտնությունն ինքնարարի, դեռ պետք է բավականաչափ մեռնենք: Դրա համար մեզ ոչինչ չպետք է վանի ավելի շատ, քան փրկության առաջարկը, խոստումը, ձեռքը: Անգամ բառն այդ մեզ պետք է նողկալի լինի՝ իբրև մեր բարձր գոյությանը անվայելուչ կիսատություն:*

*303.*

*Խավարը երբեք վախի աղբյուր չէ, հակառակը՝ անգամ ապահովություն է, երբ թանձր է այնքան, որ ոչ ոք չունի տեսնելու հնարավորություն: Ինքնին՝ չէ, բայց վախի պատճառ լույսն է, երբ կիսատ է, կամ ուրիշի տիրապետության տակ է, երբ ինքդ խավարում ես: Այլ կերպ՝ վախ է հավանականության գիտակցումը, կամ իրողությունը, որ քանի դեռ դու տեսնում ես ոչինչ, ոչինչը նայում է քեզ:*

*Ուրեմն, ինչպես գոյության պայքարի դասական կարգում, ինքնարարը, միտված լինելով ամենին, պիտի առաջնորդվի հարձակման և պաշտպանության (լույսի և խա-*

*վարի) ներդաշնակմամբ՝ փեսլականում կրելով վերջին հանդիպումը, որպեղ, իբրև հանկարծության հաղթական հանգամանք, անհրաժեշտ է լինելու ունենալ դարանակալման խավարի այն թանձրը, որը կլանելու է լույսի ցանկացած շող՝ զրկելով ուրիշ մեկին աչելու հավանականությունից, քանի դեռ ինք(ն)ը փեսնում է ամենը:*

*304.*

***Մեղք՝ ինքնարարման.***

*Եթե ներելու բան չունենա,*
*ո՞նց ապրվածանա,*
*Ու ո՞նց փիրանա,*
*եթե քեզ մայր չդառնա:*
*Վերջապես, ո՞նց լինի կին*
*ու հանկարծ ոչ փիրածին:*

*Ուսփի, թեպեփ փիեզերքն է սահմանել, որ մեղանչես,*

*բայց կամքդ է որոշում՝ լինի ինքնարարմա՞ն, թե՞ նեռի բաժին լինես.*

*Կինը մերժի՞ ինչպես միջակ մի բան ու ի՞նքն էլ անծնունդ մնա,*

*Թե՞ ների, փիրանա ...*

### *305.*

*Երբ ամբոխը հանկարծ սկսի հետաքրքրությամբ նայել քեզ (բայց դու խոզապահ չես և ոչ էլ ծաղրածու) փախի՛ր, քանզի նա քեզ նայում է իբրև կերի:*

### *306.*

*Ծանոթացնել ոչնչին, որ ունենա ամենը,*
*Ցույց տալ մահը, քանի դեռ կարող է սկսել ապրել,*
*Մենականացնել, որ զգա իր ամենուրականությունը.*
*Որ տեսնի իր փոքրի մեծությունը,*
*Քչի շատությունը,*
*Սպացած ես-ի չնչինությունն ու*
*Ինքնարարի անեզրությունը ...:*
*Թե ինչով է ավարտվում ուրիշի համար մեր այս լինելիությունը, մենք՝ ինքնարարման հավատամք կրողներս, կոչում ենք ապահով հրաժարականություն և պատվով լինում դրա մարմնացումը:*

### *307.*

*«Ծովից ծով»-ը, նախ և հիմնավորապես, հոգևոր չափում է, ապա նոր միայն դրա աշխարհագրական հետևանք, ընդ որում՝ պայմանական այնքան, որ «Ծովից ծով» հոգևոր չափմամբ էական չէ, թե ֆիզիկական ինչ մարմին ես փիրապետում, այն այլևս չի պայ-*

*մանավորում լինելիությունը ո՛չ ժամանակով, ո՛չ՝ տարածությամբ:*

*Բայց քանի որ հոգևոր չափմամբ դու դեռ «ջրհոր ես», բարեկամս, այն, ինչն ինձ համար (ինքն)արարման ձգտում է, քո շուրթերից հնչում է չոր կերը փափկացնող, նողկալի կենաց, որը ոչ միայն վիրավորում է ամենայն հոգևորը, այլ մեր լինելիության մարմինն է էլ ավելի կիսատում՝ դարձնում հաշմանդամ: Նաև սարսափում եմ կենացներդ պատահաբար իրականություն դառնալու պատկերացումից, քանզի առկա հոգևոր չափմամբ՝ հետևանքը չի լինի այլ բան, քան ինչպես «ջրհորը» անեզր անապատում, որը չի ունենա այլ նշանակություն, քան էլ ավելի մեծ թվով անասունների ծարավը հագեցնելն է, ու, դրա հետ մեկտեղ, մենության մեջ մահ՝ իբրև բաղձալի փրկություն գովերգելը:*

*308.*

*Չոր անտարբերությունն արյամբ փափկեց և դուրս հորդեց մի համատարած զվարթ տգիտություն:*

*Թանձր տխրությու՞ն, չէ՛, ինչպես որ իմաստնություն, չ կ ա՛ ...*

*309.*

*Իրար ատող անտիպողներ, ձեր փոխադարձ պետքությունն անշուշտ մեծ է, ձեր փո-*

*խադարձ սերն իրապես անկեղծ է, ինչպես որ սերը գիշատչի և զոհի միջև, և դուք անկասկած խելամիտ եք ձեր սիրո մեջ, երբ միանգամից չեք հոշոտում ու հոշոտվում՝ սպառվելու փոխարեն նախընտրում եք իրար պայմանավորող տևականությունը, ու սրանով, խելամիտ լինելուց զատ, ձեր սերը նաև ուտելու և ուտվելու ճաշակ, էթիկա, էսթետիկա ունի: Դուք նաև հանճարեղություն ունեք ձեր սիրո մեջ, երբ նույնն անում եք՝ ըստ տեսակով առանձնացած համայնքների, համայնքների ներսում՝ առանձնացված տարատեսակի, ինչը չի կարողացել անել բնությունը կենդանականության իր հանկարծաստեղծության մեջ:*

*310.*

*Այնուամենայնիվ, չի ընկալվում ճշմարտությունը, որ ցանկացած կոնֆլիկտ, ընդամենը, հետևանքն է հոգևոր պայքարի (կուզեք՝ տիեզերական պատերազմի) ու դրանում նյութը միայն միջոց է: Կարծել, թե բուրգի գագաթին տենչում են էլ ավելի մեծ նյութական հարստություն, առնվազն մոլորություն է, այն պարզ պատճառով, որ եթե անգամ ..., ապա այն կրողները վաղուց հագեցած պետք է լինեին: Նրանց դիտարկել տեղային ընչաքաղցի օրինակով՝ հիմարություն է, քանզի հայտնի ցանկացած տրամաչափի*

*ընչաքաղց այդ համակարգում չնչինություն է՝ գործիք, որն ունի օգտագործման վաղեմություն: Բայց սա մեծամասնությունը չի հասկանալու (նաև պետք չէ, որ հասկանա) քանզի այո՛, մարդը հոգևոր էակ է, բայց մարդկությունը՝ ոչ, և ոչ թե մարդն է մարդկության համար, այլ մարդկությունն է մարդու համար՝ իբրև միջոց՝ առ հոգևոր (բանականության) բարձրագույն նվաճում:*

*Սրա մասին ակնարկվում է լոկ այն բանի համար, որ ոչինչ դեռ վերջացած չէ, չի վերջանալու, ու պայքարի մեջ մտնելու են երրորդ-ՄԵԿեր ինքնարարները:*

*311.*

*- Բարև՛, ամենայն փականքություն, դեռ շա՞տ կա, որ հասնեմ հապակդ:*

*- Բարև՛, բանակա՛ն արարած, անկեղծ սասած՝ հարցդ շփոթեցնում է ինձ և ես կորցնում եմ տարածության ընկալումը, քանզի (երբ) ձայնում ես ընդհապակից:*

*312.*

*Չէ՛, եղբա՛յրս, խնդիրը միասնականության մեջ չէ, այդտեղ մենք ամենաշատն ենք կեղծում, քանզի եթե ընտանիքի պես, ապա պետք է որ արագ անցած լինեինք նյութական նվազագույն պահանջի (լափից, եկեղե-*

*ցու խաչից) ու շատ կարճ ժամանակում լուծեինք բոլոր խնդիրները, որի հնարավորությունն օբյեկտիվորեն կա, ու, միաժամանակ, ակամայից դառնայինք աշխարհում բարձր բարոյականության օրինակ ու առաջնորդող:*

*Բայց, ու մենք հիմար ենք նաև, երբ հարաբերվում ենք սիրելով, կամ ատելությամբ, երբ, ընդամենը, պետք է հարգանքի այն հեռավորությամբ, որը չի ավարտվում հուսախաբությամբ:*

*Այսպիսով, եղբա՛յրս, մեր նեղացած համակեցությունն ավարտում ենք հաշտությամբ, բայց արդեն մահվան գրկում, ու թե մեզնից ում է տրված զգալ մյուսին կորցնելու ցավը, դա էլ մի այլ վիճակախաղ է՝ գուցե, նաև, բախտավորություն:*

*313.*

*Սիրո խոստովանությունը պետք է ընդունես իբրև մահափորձ, որ ընտրության հնարավորություն ունենաս ինքնասպանության և էշ նահատակ լինելու միջև, կամ՝ չընդունես ընդհանրապես: Ու սա կոչվում է սիրել արթմնի …*

*314.*

*Ներցեղային և միջցեղային պայքարը, իբրև զարգացման բնական օրենք, մարդու համար վաղուց իրեն սպառել է, և, իբրև այդպիսին, հակաբիեզերական է, բայց, իր ամ-*

*բողջ կործանարար հետևանքով հանդերձ, շարունակվում է կիրառվել (նաև որպես պահանջի հասունացումը զսպող խաբկանք) քանի դեռ հետագա զարգացումն ապահովող նորը չի գտնվել, որի մասին ինձ հապրապես հայտնի է այն, որ անկախ սահմանումից՝ այն անպայման իր մեջ կրելու է մարդու ինքնարարման գաղափարը, որին այլընտրանք պարզապես չկա, և այդ ճշմարտությունը յուրացնելու հետաձգումից, կամ հապաղումից նվազում է հնարավորությունների պաշարը:*

*315.*

***... ինքնարարների օրհնության երգը.***

*Չկա ավելի փխուր երգ, քան օրորոցայինը, որ ստիպված է եղել երգել հայրը, ու չկա ավելի հոգեհանը, քան այն, որ երգվել է ինքզինքը՝ ...*

*316.*

*«Երբ համախոհ եմ, ինքդ էլ ավելի ուժեղ ես, իսկ երբ հակառակորդ եմ, ուժեղանալու խթան ունես: Ասել է թե՝ ոչ մի պարագայում վնաս չեմ քեզ, ու վախենալու եմ ճիշտ այնքան, ինչքան ինքդ ես անդեմ». - ընդունված բարքերին դեմ՝ այսպես խոսեց ինքնարարը:*

*317.*

*Մարդկանց համապարած կլանել է նույն մոլորությունը. նրանց թվում է, թե իրենք բանականորեն խիստ այլ ու բարձր են նրանից, ինչ եղել է կես դար և ավելի առաջ: Իսկ իրականությունը նրանում է, որ բանականությունը դեռ ծառայում է գոյության պայքարին, ինչը հասարակ անասնականություն է նրա համեմատ, ինչը փրված է լինել գոյի արարչականություն:*

*318.*

*Այնպիսի հատկանիշները, ինչպիսիք են ազատասիրությունը, ինքնասիրությունը և արդարամտությունը, որոնք, որպես կանոն, լինում են միակցված, ձեռք չեն բերվում կրթությամբ, դաստիարակությամբ, կամ վարժեցման որևէ այլ ձևով: Դրանք բացառապես գենետիկ հատկանիշներ են, որոնք բնատուր կրում են քիչ մարդիկ՝ առանձնանալով իբրև մարդու հատուկ տեսակ: Նկատի ունենալով քանակական հարաբերակցությունը՝ նման հատկանիշներ կրելը, որպես աննորմալ փոքրամասնություն, մի կողմից կարող է համարվել հիվանդություն, մյուս կողմից՝ տաղանդ, ինչպես, օրինակ, շիզոֆրենիան է հաճախ հանդիպում գիտության, արվեստի և այլ գիտակցական ոլորտների տաղանդների մոտ:*

*Որոշակի իմաստով՝ ազատասիրությունը, ինքնասիրությունը և արդարամտությունը ևս կարելի է համարել շիզոֆրենիա: Դրանք արարչական դրոշմ են, թե ունեն պատճառահետևանքային ծագում, անվազն ներկայիս դրությամբ հայտնի չէ, բայց փաստ է, որ դրսևորումը գենետիկ է:*

*319.*

*Այն, որ անհաջողությունն էլ անվերջ չի կարող շարունակվել, ինչպես ցանկացած այլ բան (բացի տգիտությունից) դա տիեզերական օրինաչափություն է, բայց, այնուամենայնիվ, բարձր բանականության համար նվաստացուցիչ բան կա նրանում, ինչն իր կամքից անկախ է՝ թեկուզ, երբ դա մեծ հաջողությունն է:*

*320.*

*Ինչպես պարզվում է «գնա մեռի, արի սիրեմ» բռնությունից ոչ ոք փրկություն չունի՝ ո՛չ մի հանճար և ո՛չ մի տականք, ուստի նա, ով անկեղծ է անսեր միջավայրում իր գոյության մեջ, պետք է այնպես անի, որ մեռնելուց հետո էլ ետ գա միջնամատը ցցած՝ իբրև միջակությունը ժխտող բարձր ճաշակի դրսևորում:*

*321.*

*... որովհետև ամբողջական չենք քննել մեր հայրերին, չենք փնտրել ու չենք արհամարհել նրանց թուլությունները:*

*... ուրեմն այլ բան ունակ չենք անելու ինքներս ու անելն էլ անօգուտ է, քանի դեռ (նախ) չենք անկեղծացել հաջորդ սերնդի համար՝ այսօրվանից սիրելով մեր խեղճության նկատմամբ մեր զավակների վաղվա արհամարհանքը, որը պետք է ծնվի նրանց ուժից և ուժեղացնի նրանց:*

*322.*

*Զգայունակությունն էլ, ինչպես գիտակցականությունը, ձգտում ունի կատարելության, որտեղ դրանց հակիմաստությունը վերանում է ոչ թե անբովանդակ և անզգամ միջակության, ինչպես հաճախ հանդիպում է, այլ՝ ամենակուլ այնպիսի պարզության մեջ, երբ այլևս անհնար է տարանջատել իրականության ընկալման ձևաքանությունը՝ միտք է, թե զգացմունք, ու միայն դրանից հետո է սկիզբ առնում հաղորդակցումը գոյության ոգու հետ, նրա հետ կենակցումն ու ինքնարարումն իբրև այլ (բարձր) բան, քան եղել ես՝ որպես զգացմունքային փոքրություն և բանական չնչինություն:*

*323.*

*Փրկու՛մ ես, թե՞ կործանում,*
*Առաջնորդու՛մ ես, թե՞ հեփապնդում,*
*Վկա՞ ես ինձ, թե՞ խամաճիկդ եմ ես,*
*Վերջապես, որպես ծնողի՞ արհամարհեմ քեզ,*
*Թե՞ սպասեմ ինչպես զավակի,*
*... չը-գի-տեմ ...,*
*Բայց ինձ գայթակղում է այս փողերը թելադրելու անխղճությունդ և դրանք հեգելու՝ հպարտությանդ խսպառ ոչնչացումը:*

*324.*

*Եթե անգամ մեղքը փրվել է իբրև փորձություն, ապա ոչ թե կողմերի միջև ընտրություն կատարելու, այլ՝ արարչության և ամլության, որտեղ ճշմարտությունը նրանում է, որ չկա մարդուն կենդանականությունից բարձրացրած գեթ մեկ նվաճում, որին պայմանավորած լինի անմեղությունը, և/կամ պայմանավորած չլինի մեղքը: Առհասարակ, ամլությունն ու անմեղությունը, իրենց նույնաբովանդակությամբ, ցանկացած գոյակի գոյության արդարացումն են, բայց ո՛չ մարդու: Հենց միայն մեղքն է առաջին հանգամանքը, որը մարդուն նմանեցնում է Արարչին՝ անկախ նրա լինելիության ընկալումից՝ պատճառ է, թե՞ նպատակ:*

*Բայց այստեղ էլ պետք է գիտենալ՝ եթե բոլորին վստահեցնես, որ ամեն ոք ազատված է, ապա նրանցից յուրաքանչյուրն անհապաղ պես անսանձականությունից էլ ներքև կգլորվի, ուստի սրանում էլ պետք է թույլ տալ այն ազդիճան ինքնուրույնություն, որ մեղսագործն իրեն զգա մեղքն արարած, ապա՝ ընկալի մեղքով ինքնարարված, ու պետք է զերծ մնալ քարոզի բթացումից, առավել ևս՝ քարոզող լինելուց, քանզի երբ այն չունի այլ նշանակություն, քան միայն հասարակացնելով ոչնչացնելն է ցանկացած բարձր բան՝ հատկապես, երբ այն վերաբերվում է ինքնարարմանը:*

*325.*

*Մարդն ինքնարարմանն այլընտրանք չունի և, գուցե, սրանում նա միակ դժբախտ էակն է, որը չի կարող իրեն թույլ տալ արարչի անսպառ հովանավորչության ներքո անհոգ գոյություն, բայց անկախ նրանից, որ ինքնարարումը դեռ չի հոչակել իր լինելիությունը պայմանավորող մեկ նպատակ, նա հենց այդ նպատակով էլ առաջնորդվում է վաղնջական ժամանակներից: Նրա ցանկացած ձգտում՝ անգամ անմահանալու ցանկությունը, և նրա ցանկացած նվաճում՝ այդ թվում ինքնաբուժման, ոչ միայն անկախ չեն ինքնարարումից, այլ՝ ուղիղ ածանցվում են*

*դրանից: Ուստի, բանականության նվաճման և առաջնորդման այս ՀԱՎԱՏԱՄՔԸ ճշմարիտ արթմնությունից զատ, նաև զգուշացնում է սպասվող հոգևոր ճգնաժամի, որն արդեն իսկ անգիտակից զգալուց բացի, գիտակցաբար ընկալվելու է, քանզի երբ ինքնարարման մեջ բոլոր նվաճումները դեռ միայն մարմնական են, որի ցանկացած հաջորդող ձեռքբերման հետ զգալի է լինելու, թե էությունն ինչքան հին, սահմանափակ ու անհապատասխան է դրան: Բայց հենց այն նույն դժբախտությամբ, որ ինքնարարմանն այլընտրանք չկա, մարդը դատապարտված է գտնել մարմնականի և հոգևորի ներդաշնակությունը նաև դրանց բարձր զարգացման մակարդակում ու լինել այդ ներդաշնակումը՝ անկախ նրանից, թե դրան հասնելու համար դեռ քանի քաղաքակրթություններ պետք է անցնի, քանզի հակառակը կնշանակի ոչ այլ բան, քան ոչնչացում:*

*326.*

*Ինքնարարման վարակի տարածման հարցում, մենք՝ վարակներս, պետք է առաջնորդվենք եզակիությամբ և լինենք այնքան զուսպ, որ խուսափենք ինչպես տգիտությունից, որն ունակ է սպանել ամենայն բարձր բան, այնպես էլ ուրիշի մտքերով խցանված գիտունությունից, քանզի սրանում էլ անա-*

*բալ ոչինչ չի մնում՝ ձևափոխեղվում է այլանդակության: Փոխարենը՝ մեզ պետք է գրավի այն հասած կուսությունը, որը փենչում է սիրվել, բայց դեռ ինքն իրենից չի շեղվել, իսկ շեղվածներից այն մեկերը, որոնք դեռ ներուժ ունեն իրենց ինքնան վերագտնել: Մեզ, որպես արգասաբեր միջավայր, պետք է գրավեն միայն այն բանականությունները, որոնք բնապուր հակվածություն ունեն իրենք իրենց ստեղծել և որոնց պակասում է հուշումը, որ ԿԱՐՈՂ ԵՆ:*

*327.*

*«Միևնույն է, լինելու է այն, ինչին արժանի ես, նաև կրելու ես բաժին հետևանքը՝ որպես հավաքականության մաս».- ահա այն զսպիչը, որը պետք է գիտակցությունդ մաքուր պահի մաղթանք, խորհուրդ, խրատ աղբերից, ու միայն մաքուր գիտակցությունն է ունակ հետևանքը տեսնել իբրև պատճառ և միջոց՝ լինելու ավելին, քան՝ էիր:*

*328.*

*Բարեկամը սպասում է առիթի, թշնամին՝ հնարավորության. ավելին պետք չէ իմանալ՝ նրանց նույն կողմում տեսնելու, առավել է թե՝ կողմդ իմանալու համար:*

*329.*

*Հիշի՛ր, զավա՛կս, պարզամ որպես,*
*Ինձ հիշելու պարտք չունես ...*
*Ու ծնվելով՝ արդեն իսկ ինձ գերազանցել ես,*
*Ուստի, ուրիշ ոչ մեկին, քան միայն ինքդ քեզ,*
*Հաղթելու խնդիր չունես.*
*Ինքնարարվիր ավելին, քան արարել եմ ես:*

*330.*

*Թե որ ուզես հասկանալ՝ ինչքան անբովանդակ կարող է լինել մարդկային գոյությունը, բավական է փենել, թե ինչպես կհամբուրի նաև այն, ինչի վրա միզում էր՝ միայն նրա համար, որ ինչ-որ մեկը հնարամտություն է ունեցել դրանից ստանալ պաշտամունքի խորհրդանիշ, ինչին հանդիպելուց՝ «հոգևոր» անասունի մտք միանգամից արթնանում է ոմն «լուսավորյալի» կողմից ներարկված և սովորութականության ասփիճանի վարժեցրած փգիփությունը, որի անեզրությունը նրան փալիս է հավերժությանը հաղորդակցվելու՝ Աստծուն հանդիպելու պատրանք, ինչից հետո էլ ոչինչ չի կարող վերադարձնել նրա ինքնասուզման՝ արարչական երկխոսության ունակությունը:*

*Կրոնականությունը մարդուն հեռացնում է կենդանուց ճիշտ այնքան, ինչքան մոտեցնում է անասնականությանը:*

*331.*

*Չկա իմաստնության մի այնպիսի ճշմարիտ ուղի, որի հանգրվանը չլինի ամենակուլ լռությունը: Վերջապես, լռությունն ինքնին ճշմարտացիության ցուցիչն է ցանկացած հավատամքի և/կամ փիլիսոփայության, այն կրողի հեռավորության որոշիչն է ու հասունության չափը սեփական իմաստնության մեջ, քանզի երբ իմաստնություն կա միայն նրանում, ինչում կա ինքնաճանաչողություն և ինչը հենց միտված է ինքնաճանաչողության, որի վերմարդկային ատրիճանում, ինչը կոչվում է ինքնարարում, դադարում է ոչ միայն խոսունակությունը, նաև՝ ինքնախոսությունը:*

*Մարդկայի՞ն է արդյոք այս նվաճումը, բնավ, ո՛չ, հետևաբար և չնչին են իմաստնության այն բոլոր հեղինակությունները, ովքեր մինչև վերջին շունչը շարունակել են խոսել,- բոլորը, ովքեր չեն դադարել մարդ համարվել:*

*332.*

*Մահվան եզրին փայլատակած ճշմարտությամբ՝*

*Ինձ հաղորդած պատգամդ, հա՛յր,*
*Շարունակում է առաջնորդել,*
*Բայց թանաքի փոխարեն՝ արդեն արյամբ:*

*Տողերս դարձել են մեղքի օրրան,*
*Որտեղ Ասպվածն արդարանում է,*
*Ները՝ մխիթարվում,*
*Եվ միայն Բարձրագույն Ես-ն է օրորոցային լսում:*
*Ու թեկուզ հերքում եմ սրանով նաև քեզ,*
*Բայց, որ դարձնեմ ու մնաս իմ Ես:*

*333.*

*Այնուամենայնիվ, սկիզբը շարունակում է մնալ փարկած, վերջը՝ գուշակություն, ու սրանից առավել ոչինչ ավելի ամբողջական չի ամփոփում գոյի մեջ մարդու չնչինությունը՝ իր ամբողջ հանճարեղ նվաճումներով հանդերձ: Նույնը կասեր ցանկացած հեքիաթի կերպար, եթե ունենար մտածելու ինքնուրույնություն, ուրեմն, սա, միաժամանակ, մեզ արտոնում է որոշել սկիզբը և սահմանել վերջը, ինչում մարդը նախորդում է սկզբին ու էլ երբեք չի հիշատակվում:*

Δ



### *Խորհրդանիշ՝ Բարձրագույն Եսի,<br>նույնն է՝ ինքնարարի,<br>նույնն է՝ երրորդ մեկի,<br>կամ, պարզապես, Գորշի եռանկյուն:*

*Կազմված է հայերեն երեք «ի» տառերից, որոնք արտահայտում են ինքնաճանաչողությունը, ինքնահաղթահարումը (նույնն է՝ ինքնաոչնչացում) և ինքնարարումը:*

*Տառերի համակցությամբ կենտրոնում ձևավորվող եռանկյունը խորհրդանշում է Բարձրագույն Ես-ի, ինքնարարի, երրորդ մեկի արարումը, ինչին և միտված է ինքնաճանաչողություն, ինքնահաղթահարում, ինքնարարում փոխպայմանավորված եռամիասնությունը:*

*Եռանկյան գագաթներից դուրս եկող կոր թևերը պատկերին հաղորդում են պտույտ, ինչն արտահայտում է ինքնարարման հավերժականությունը, ինչպես նաև Բարձրագույն Ես-ի (ինքնարարի, երրորդ մեկի) փոխադարձ, փոխլրացնող կապը ինքնաճանաչողություն, ինքնահաղթահարում, ինքնարարում եռամիասնության և դրանցից յուրաքանչյուրի հետ առանձին, միա-*

*ժամանակ՝ դրանց փոխադարձ, փոխլրացնող կապը միմյանց հետ:*

*Տառերի հայերեն լինելը խորհրդանշում է գաղափարի ծագումը, բայց ոչ պատկանելիությունը, այն համա- և վերմարդկային է:*

*Հիմնական գույնը գորշն է, ինչը խորհրդանշում է անդինը, հետևորդության, նաև զանգվածների առաջնորդման, քարոզի, «կրոնականության», ստրկության, իշխանատենչության և այլնի մերժումը, սահմանում է դրա վերաբերելիությունը բացառապես անհատականությանը:*

*Սույն մեկնաբանությամբ՝ խորհդանիշը կոչված է համարվել ինքնարարման հավատամքը կրողների սիմվոլ:*

***Խորհրդանշի հեղինակ՝ Տիգրան Գորշ, 2021թ.***

## *Գորշի այլ գրքեր*




*2015*




*2017*



*2019*

